# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԳՈՐԾԻ ՊԱՅՔԱՐԻՆ ՄԻՇՏ ԵՂԵ՛Ք ՊԱՏՐԱՍՏ

## Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ՈՂՋՈՒՅՆԸ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆԸ




Թանկագին երեխանե՛ր, Սովետական Միության պատանի պիոներնե՛ր։

Այսօր ձեր նշանավոր հոբելյանն է՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության քառասնամյակը։ Սրտանց շնորհավորում եմ ձեզ, պատանի լենինյաններ, այդ պայծառ ու բերկրալի տոնի առթիվ։

Ձեզ հետ միասին պիոներիայի ծննդյան օրը նշում է նաև ամբողջ սովետական ժողովուրդը։ Պիոներական կարմիր վզկապը հպարտությամբ են կրել նրանք, ովքեր ստեղծում էին առաջին կոլտնտեսությունները, տայգայում կառուցում էին նոր քաղաքներ ու գործարաններ, նվաճում հզոր գետերը, հերկում դարավոր խոպանը, գրոհում տիեզերքը, ովքեր անձնվիրաբար աշխատում են կոմունիստական աշխատանքի բրիգադներում։ Իրենց պիոներական երդմանը, Իլյիչի պատգամներին միշտ հավատարիմ են եղել նրանք, ովքեր իրենց կյանքը նվիրել են մեր Հայրենիքի համար, ձեր երջանկության համար մղված մարտերում։

Այսօր պիոներական վզկապը՝ կարմիր դրոշի մի մասնիկը դուք եք կրում, մեր պատանի փոխարինողներ։

Քառասուն տարում մեծ ու փառավոր ուղի է անցել Լենինի անվան պիոներական կազմակերպությունը։ Սովետական ժողովուրդը սիրում է իր երեխաներին, հպարտանում պատանի պիոներների գործերով ու սխրանքներով։

Մենք՝ ավագ սերնդի մարդիկ, սիրով ու շնորհակալությամբ ենք վերհիշում առաջին պիոներներին, ովքեր պայքարում էին մանուկների անապաստանության դեմ, սովորեցնում էին անգրագետներին, օգնում պարտիային ու ժողովրդին՝ կառուցելու նոր կյանք։ Հայրենական Մեծ պատերազմի ահեղ տարիներին պատանի պիոներները մարտնչում էին պարտիզանական ջոկատներում, հետախուզություն էին անում, հերթապահում էին հոսպիտալներում, հոգ էին տանում մարտիկների ընտանիքների մասին, աշխատում էին դաշտերում ու գործարաններում։

Մեր ժողովրդի պատմության մեջ ընդմիշտ կմնան հերոս պիոներ Պավլիկ Մորոզովի, Կոլյա Մյագոտինի, Կիչան Ջակիպովի, Գրիշա Հակոբյանի, Վալյա Կոտիկի, Լյոնյա Գոլիկովի, Մարատ Կազեյի և ուրիշ շատ խիզախ երեխաների անունները, որոնք հերոսական սխրագործություններ են կատարել ի փառս սիրելի Հայրենիքի։

Մենք տեսնում ենք, թե ինչպես մեր օրերի պատանի լենինյանները սրբությ[illegible] են կատարում լենինյան պատվիրանը՝ «Միայն բանվորների և գյուղացիների հետ համատեղ աշխատանքում կարելի է դառնալ իսկական կոմունիստներ»։ Երեխաները Հայրենիքը զարդարում են այգիներով, աճեցնում են եգիպտացորենի և շաքարի ճակնդեղի հարուստ բերք, հավաքում են մետաղի ջարդոն, պահպանում են բնությունը։ Եվ դա շատ լավ է։

Դուք ձեր հոբելյանը տոնում եք կոմունիզմի արշալույսին։ Մեր պարտիայի 22-րդ համագումարն ընդունեց կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագիրը, որի մեջ մարմնավորված են մեծ Լենինի գաղափարները։ Կոմունիզմը միլիոնավոր մարդկանց պայծառ

ՀՈՒԼԻՍ
№ 7 1962 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

երազանքն է, դա մի հասարակարգ է, որտեղ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր։

Ավագ սերունդը, որը շատ է աշխատել հանուն հիասքանչ գալիքի, կոմունիզմի էստաֆետան հանձնում է երիտասարդությանը՝ լենինյան կոմերիտմիությանը։ Իսկ դուք, պատանի լենինյաններ, պատրաստ եղեք այդ էստաֆետան ընդունելու ձեր ավագ եղբայրներից ու քույրերից։

Կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը ապահովել են ձեր երջանիկ մանկությունը։ Ձեզ համար կառուցվել են հիանալի դպրոցներ ու պալատներ, ստադիոններ ու առողջարաններ, պիոներական ճամբարներ ու գրսայգիներ։ «Ամեն լավագույնը՝ երեխաներին»—կոմունիստական պարտիան կենսագործում է լենինյան այս պատվիրանը։

Պատանի սերնդի առջև լայն հորիզոններ, հստակ նպատակներ է բացում կոմունիստական պարտիայի Ծրագիրը։ Դուք պետք է բազմապատկեք մեր հայրենի երկրի հարստությունները, փոխեք գետերի հոսանքը, կառուցեք բարդ, խելոք մեքենաներ։ Դուք կշարունակեք տիեզերքի գրոհը, կբացահայտեք բնության շատ գաղտնիքներ։ Երազեցե՛ք, ստեղծագործեցե՛ք, խիզախեցե՛ք։

Թանկագին երեխանե՛ր։ Սովետական ժողովրդի մեծագործությունների արժանավոր շարունակողները դառնալու համար դուք պետք է արդեն այժմ, պիոներական հասակում, ձեր մեջ դաստիարակեք կոմունիստական հասարակարգ կառուցողի գծեր։

Անեցեք, եղեք աշխատասեր, հարգեցեք ամեն մի աշխատանք։ Ժողովրդի, Հայրենիքի բարօրության համար կատարվող աշխատանքն է յուրաքանչյուր սովետական մարդու կյանքի իմաստը, նրա իսկական երջանկությունը։ Հիշեցեք, միայն միլիոնների աշխատանքով, աշխատանքով և աշխատանքով կարելի է կառուցել կոմունիզմը։

Հաստատակամորեն տիրապետեցեք գիտությունների հիմունքներին։ Ձեզ համար, երեխաներ, ամենագլխավորն է գերազանց սովորել, ստացած գիտելիքները կիրառել կյանքում։ Որքան շատ գիտե և շատ բան կարող է անել մարդը, այնքան շատ օգուտ կբերի նա հասարակությանը։ Առանց գիտելիքների չկա կոմունիզմ։

Սիրեցե՛ք մեր մեծ, բազմազգ Հայրենիքը, բազմապատկեցեք նրա փառքը, ապրեցեք համերաշխ և ուրախ, կոփեցեք ձեզ, ամեն ինչում հավասարվեք ձեր ջոկատավարին՝ լենինյան կոմերիտմիությանը։

Պատանի պիոներնե՛ր։

Ձեր դրոշի վրա Լենինի անունն է։ Անեցեք որպես կոմունիստ լենինյաններ։ Աշխատեցեք Լենինի պես։ Սովորեցեք Լենինի պես։ Սովետական Հայրենիքը սիրեցեք այնպես, ինչպես նրան սիրում էր մեր թանկագին Իլյիչը։

Կոմունիստական պարտիայի գործի պայքարին միշտ եղե՛ք պատրաստ։

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության 40-ամյակի կապակցությամբ և նշելով նրա մեծ աշխատանքը երեխաների կոմունիստական դաստիարակության ասպարեզում, Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ պարգևատրել ԼԵՆԻՆԻ շքանշանով։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
Նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
Քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

Մոսկվա, Կրեմլ, 17 մայիսի 1962 թ.

# ԳԻՇԵՐԸ ճամբարում

ՎԱՉԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

*Մութը իր սև քողն է փռել*
*Վրաններին ճամբարի,*
*Եվ ճամփերն են վաղուց լռել*
*Թփուտներում անտառի:*

*Փոքրիկ առուն խոտերի տակ*
*Ինչ-որ երգ է շշնջում,*
*Եվ երկնքից՝ բիլ ու հստակ՝*
*Քնքուշ երազ է իջնում:*

*Թեժ խարույկն է հանգել արդեն,*
*Հովը մոխիրն է ցրում,*
*Եվ շիկարած կայծերն են դեռ*
*Աստղերի պես ցոլցլում:*

*Մանուկները քնի մեջ խոր*
*Դեռ խաղում են, վազվզում.*
*Իսկ անտառը գգվանքով մոր*
*Նրանց օրոր է ասում:*

*Եվ հսկում է ինչպես մի գետ*
*Գիշերն անույշ ու խնդուն.*
*Լուսինն ասես ճամբարի պետ*
*Լուռ շրջում է դեռ արթուն:*

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

*Ճամբարային խաղեր*

## ԵՐԵԿՈՅԱՆ ՀԵՏԱԽՈՒԶՈՒԹՅՈՒՆ

Այս խաղը լավ կլինի անցկացնել ճաշից հետո, երբ օրն սկսում է լիրիկնանալ: Երեխաները բաժանվում են երկու խմբի, յուրաքանչյուրում՝ 20—25 պիոներ: Ղեկավարի կողմից խմբերում 5-ական երեխա «հսկիչներ» են նշանակվում, իսկ մյուսները «հետախույզներ» են: Նախօրոք անտառում ընտրվում է երկու բացատ, որոնք միմյանցից գտնըվում են 25—50 մետր հեռավորության վրա: Խաղացողների յուրաքանչյուր խումբ տեղավորվում է այդ բացատներից մեկում: Խաղի ղեկավարը խմբերին հանձնում է 10 փոքրիկ սպիտակ դրոշակ: Երեխաները դրոշակները կախում են բացատի շուրջը եղած թփերից, ծառերից: Դրոշակները միմյանցից պետք է տարբերվեն: Մի խմբի համար կարելի է քառակուսի դրոշակներ պատրաստել, մյուսի համար՝ եռանկյունի: Խաղը սկսվում է շեփորի ազդանշանով: Հետախույզները ձգտում են աննկատ մոտենալ հակառակորդի բացատին, խլել նրանցից ամենաքիչը 5 դրոշակ և առանց գերի ընկնելու, վերադառնալ իրենց խաղավայրը: «Հսկիչները» պաշտպանում են իրենց ճամբարը հակառակորդի հարձակումներից: Նրանք գերի են բռնում հակառակորդի «հետախույզներին»: Յուրաքանչյուր «հսկիչ» պաշտպանում է երկու դրոշակ, որոնք կախված են միմյանցից հեռու, տարբեր թփերի վրա: «Հետախույզները» խաղի ընթացքում մտածում են բազմաթիվ հնարամտություններ, որպեսզի շեղեն «հսկիչների» ուշադրությունը, ավելի հեշտությամբ





# ՀԵՌԱՎՈՐ ԵՐԹՈՒՂԻՆԵՐՈՎ

Քայլում են պիոներները, և նրանց երգը զվարթ թևածում է լայնատարած դաշտերում, քամու թևով բարձրանում բլուրները, միախառնվում աշնանային շռայլ գույներով ներկված անտառների սոսափյունին:

Քայլում են տուրիստները, իսկ երեքօրյա հետիոտն այս արշավի երթուղին երկար է՝ Երևան-Արզնի-Փոքրավան-Արայի լեռ:

Ահա և Արզնի-Շամիրամ ջրանցքը, որի կենարար ջուրը շունչ է տվել դարավոր քարքարուտներին: Մի քանի տարի ևս և ջրանցքի սառնորակ ջրերը փարթամ այգիներով կծածկեն ծարավ ու պապակ խոպանները: Եղվարդի ուղղությամբ ջրանցքից մի մեծ առու է դուրս գալիս, որը գլգլալով հոսում ու ողողում է խաղողի նորատունկ այգիները: Առվի ափին հով է ու կանաչ, իսկական դադարի վայր: Հնչում է շեփորը: Արշավայինները հանում են ուսապարկերը, լվացվում, հանգստանում: Աղջիկները բնագիտության ուսուցչուհի Ս. Մարտիրոսյանի հետ սկսում են սեղանի պատրաստությունները տեսնել, իսկ տղաները հետազոտում են շրջակայքը:

Նախաճաշելուց և հանգստանալուց հետո ավագ ջոկատավար Մ. Գրիգորյանն առաջարկեց խաղալ «Հետախույզի հետքերով» խաղը: Տղաներից մի քանիսը հետախուզության գնացին: Նրանք իրենց անցած ճանապարհի երկարությամբ պետք է նշաններ դնեն, սպիտակ խճաքարեր շարեն մի քանի կիլոմետր տարածության վրա, որից հետո իրենց հետքը կորցնելով, թաքնվեն:

— Մենք կգնանք հետախույզների հետքերով ու, եթե կարողանանք, կգտնենք նրանց...

— Ուրեմն կարող է պատահել և չգտնե՞ք էլ,— զարմացավ Թամարը:

— Կարող է, եթե ճանապարհային նշանները չիմանանք, չենք գտնի:

Կեսօրին պատանի տուրիստները շարունակեցին ճանապարհը: Ավագ ջոկատավարը նրանց բացատրում էր ճանապարհային նշանների իմաստը, շատերն էլ իրենք՝ պիոներներն էին գուշակում:

Երեկոյան դեմ արշավայինները հասան Արզնու սարահարթը: Այստեղից նրանց առաջ բացվեց մի հիասքանչ տեսարան: Անտառոտ բարձունքից օձագալար ճանապարհն իջնում էր ձորը, ուր Հրազդանի երկու ափերին հեքիաթային տնակների պես բարձրացել էին Արզնի առողջարանի, հանքային ջրերի գործարանի և նորակառույց գիշերօթիկ դպրոցի գեղեցիկ շենքերը:

Պատանի տուրիստներն առաջին գիշերն անցկացրին Արզնիում, իսկ առավոտյան բարձր սարից գահավիժող արհեստական ջրվեժի մոտ լուսանկարվելուց հետո շարունակեցին ճանապարհը դեպի պատմական Արայի լեռը, որի անանուն գագաթ-

---

փախցնեն դրոշակը: Ինչպես տեսնում եք, «հետախույզների» խնդիրը ևս այնքան էլ հեշտ չէ: Նրանք ոչ միայն պետք է «հսկիչներից» փախցնեն դրոշակները, այլև առանց բռնվելու հասնեն իրենց ջոկատը: Չէ՞ որ ճանապարհին նրանք կարող են հանդիպել հակառակորդի «հետախույզներին» և գերի ընկնել:

Այն «հսկիչը», որից փախցրել են դրոշակները, պետք է կանգնի բացատի կենտրոնում: Նա կարող է այդտեղից օգնել ընկերներին, զգուշացնել հակառակորդի անակնկալ հարձակումները:

Երբ խումբը ձեռք է բերում 5 դրոշակ, տրվում է ազդանշան, իսկ 10 րոպեից հետո հնչում է երկրորդ ազդանշանը, որից հետո խաղը ավարտվում է: Սկսվում է «գերիների» փոխանակումը: Հակառակորդը յուրաքանչյուր «գերու» համար փրկագին է պահանջում մեկ դրոշակ: Հաղթում է այն խումբը, որի մոտ մնում են հակառակորդի դրոշակները: Եթե երկու խմբում էլ գերիներ չկան, ապա խաղի արդյունքը որոշվում է դրոշակների քանակով:

Խաղից հետո բացատում պիոներները խարույկ են վառում, և տանուլ տված խումբն իր ուժերով «համերգ» է կազմակերպում: Երեխաները երգում են, պարում, արտասանում, որից հետո վերադառնում են ճամբար:

ՅՈՒՂԱԲԵՐ ԵՍԱՅԱՆ

## «ԱՆՏԵՍԱՆԵԼԻՆ»

Խաղի անցկացման վայրը անտառն է, որը շրջապատված է թփուտներով: Խաղը վարելու համար անհրաժեշտ է երկու սուլիչ՝ տարբեր ձայների:

Խաղացողներն իրենց կազմից ընտրում են «անտեսանելի» և «հետապնդող», որոնց տրվում է մեկական սուլիչ: Երբ խաղավարը սկսում է խաղը, «անտեսանելին» արագ հեռանում է դեպի թփուտները, իսկ 3—4 րոպե հետո նրան հետևելու է դուրս գալիս «հետապնդողը» իր ջոկատով: «Անտեսանելին» ժամանակ առ ժամանակ սուլում է, որին անմիջապես սուլոցով պատասխա-

ներից ամենաբարձրը նրանք որոշել էին կոչել «Պիոներական»:

Մի քանի ժամ հետո տուրիստները հասան Աշտարակի շրջանի Դովրի գյուղը: Այդ ժամանակ տեղի դպրոցի աշակերտները անց էին կացնում սպորտային միասնական օրվա իրենց միջոցառումները: Փոքր դադարից ու հանգստանալուց հետո արշավայինները ֆուտբոլ խաղացին դպրոցի հավաքական թիմի հետ: Թեպետ նրանք խաղը տանուլ տվեցին 2:1 հաշվով, բայց և այնպես աշխուժացան ու ճանապարհը շարունակեցին նոր եռանդով:

Արշավախումբը երբ հասավ Արայի լեռան ստորոտում գտնվող Փոքրավան գյուղը, բնակիչները շրջապատեցին պատանիներին ու աղջիկներին: Տեղաց հարցերի տարափ. որտեղի՞ց են, ու՞ր են գնում, ո՞ր դասարանցիներ են...

Ապա նրանք տուրիստներին տրամադրեցին կոլտնտեսության գրասենյակը, խորհուրդ տվեցին այնտեղ թողնել ուսապարկերն ու ավելորդ այլ ծանրությունները, ցույց տվեցին դեպի լեռան գագաթը տանող ամենակարճ ճանապարհը:

—Ջուր, ջուր շա՛տ վերցրեք, սարի վրա աղբյուրներ չկան, —խորհուրդ տվեց մի տարեց գյուղացի ու ավելացրեց. —Հա, մեկ էլ չմոռանաք տաք շորեր վերցնել ձեզ հետ, ցուրտ է, կմրսեք:



***

Քայլելը դժվար էր, արշավայինների ուղին անցնում էր սարի լանջերին փռված ցելերի ու նրանց շուրջը կիտված քարաբլրակների, քարքարոտ ձորակների ու մացառուտների միջով: Վերելքն ավելի դժվարացավ: Փչում էր լեռնային սառը քամի, մեկ-մեկ էլ սարերի պտտահողմն էր ոլորմոլոր անցնում, եվ չնայած ցրտին, հոգնածությանը, քաղցին, նրանք չէին հուսահատվում: Ինչ

---

նում է «հետապնդողը»:

Խաղի նպատակն է սուլոցի հետքերով գտնել «անտեսանելուն», որը արագորեն տեղից-տեղ է փախչում և դժվարացնում իրեն գտնելը:

Եթե հետապնդողներին հաջողվում է գտնել «անտեսանելուն», ապա «հետապնդողը» դառնում է «անտեսանելի» և խաղը շարունակվում է:

Խաղին կարող է մասնակցել մեկ ջոկատ՝ 20—25 պիոներ:



## ԾԻԾԱՂԱՇԱՐԺ ԷՍՏԱՖԵՏԱ



Խաղն անցկացնելու համար անհրաժեշտ են՝ աթոռներ, բաժակներ, դրոշակներ (թիմերի թվին համապատասխան):

Խաղի հրապարակում, ստարտի գծից 10—15 մետր հեռավորության վրա դրվում են աթոռները, որոնց վրա կան ջրով լի բաժակներ, աթոռներից 10—15 մետր հեռավորության վրա դրված են դրոշակները:

Երբ տրվում է խաղն սկսելու հրահանգը, յուրաքանչյուր խմբից մեկ զույգ դուրս է գալիս շարքից: Մեջքերով իրար կապած



գնով էլ լինի, այդ օրը պետք է բարձրանային լեռան հյուսիս-արևելյան կողմի՝ գագաթը:

Վերջապես պատանի տուրիստները հաղթահարեցին 2577 մետր բարձրությունը և հասան լեռան ամենաբարձր գագաթին: Առաջինը լեռան գագաթը հասավ 10-րդ դասարանցի Սեդա Հովհաննիսյանը, ապա արշավախմբի ղեկավարը: Քիչ հետո նրանց մոտ էին Սիլվան, Կարոն, Մարիետան, Վոլոդյան և մյուսները:

—Ուռա՜, բարձունքը գրավված է...

Քիչ հետո բարձր ձողի ծայրին ծածանվում էր կարմիր դրոշը: Ապա Արայի լեռան գագաթին բոցկլտաց մացառներից ու խոտից պատրաստված խարույկը: Ներքևում փռված էր Արարատյան դաշտավայրն իր աշնանային հիասքանչ տեսարաններով, այգեստաններով, իսկ վարելահողերի աշնանացան ցելերը հսկայական տառերի էին նմանվում: Հեռվից կապույտ մշուշի հետ միախառնված երևում էր չքնաղագեղ Սևանը: Բոլորն էլ այնքան ուրախ էին, որ նույնիսկ չէին զգում, թե ինչպես կամաց-կամաց իջնում էր երեկոն: Երբ հասան լեռան ստորոտը, բոլորովին մութ էր արդեն: Նրանք նոր միայն հիշեցին, որ իրենց հետ լապտեր չեն վերցրել, իսկ վերադարձի ճանապարհը դժվարին էր:

Հեռվից փայլփլում էին գյուղի լույսերը: Արշավայինները մեկ շարք կազմած ու իրարից մի քայլ հեռավորությամբ սկսեցին առաջանալ այդ լույսերի ուղղությամբ: Առջևից ձեռնափայտի օգնությամբ դարափոսերը, մացառուտներն ու քարակույտերը տնտղելով՝ զգուշությամբ առաջանում էր արշավախմբի ղեկավարը: Իսկ վերջից քայլում էին ավագ ջոկատավարն ու բնագիտության ուսուցչուհին:

—Առջևում մեծ սալաքար է, իսկ դեպի ձախ՝ փոս, զգուշացե՛ք,—երբեմն-երբեմն ասում էր արշավախմբի ղեկավարը:

Ու քայլում էին նրանք մեկ ժամ, երկու, երեք... իսկ գյուղի լույսերը դեռ հեռու էին ու հեռու:

Ամպերի պատռվածքից գլուխը հանեց լուսնի մահիկը:

---

և ձեռքերը խաչաձև միացրած՝ զույգերը վազում են դեպի աթոռները: Հասնելով աթոռներին՝ անջատում են ձեռքերը, վերցնում ջրով լիքը բաժակները, վազքով շրջան կատարում դրոշակի շուրջը, վերադառնում դեպի աթոռները, բաժակները դնում իրենց տեղը, նորից իրար միանում մեջքերով և, մեկ ոտքի վրա ցատկելով, վազքով գնում նախկին տեղերը:

Այդպիսով, հաղթում է այն թիմը, որն արագ է կատարում վերը նշված պայմանները և քիչ սխալներ թույլ տալիս:

Խաղին կարող են մասնակցել պիոներական հասակի բոլոր երեխաները:

## ԴԻՊՈՒԿ ԴԱՐՁՈՒՄ

Հրապարակում դնում են աթոռ կամ տաբուրետ: Խաղին մասնակցել ցանկացողը նստում է աթոռին: Նրա աչքերը փակում են կամ գլխին դնում են թղթե թասակ:



Թող նա փորձի աթոռից վեր կենալ, 5 քայլ առաջ անցնել, կատարել դարձ դեպի աջ, կրկին 5 քայլ կատարել և նորից դառնալ դեպի աջ: Կրկնելով այդ առաջադրանքը էլի երկու անգամ (և այդպիսով գծագրելով հրապարակում լրիվ քառակուսի), խաղացողը պետք է ուղիղ նստի աթոռին:

Ո՞վ կհաջողվի կատարել այդ հասարակ թվացող առաջադրանքը:

—Կարծես ճանապարհից շեղվել ենք,—լուսնի կաթնալույսի տակ շրջակայքը դիտելով՝ նկատեց ավագ ջոկատավարը։

—Իսկապես,—ասաց Մարտիրոսյանը,—մենք ցերեկն այստեղով չենք անցել։

—Բայց չէ՞ որ մենք գյուղի լույսերի ուղղությամբ ենք գնում։

—Լույսերը խաբուսիկ են, մանավանդ գիշերը...

Լուսինը նորից ամպերի տակ անցավ, ու արշավայիններն սկսեցին անհանգստանալ. մի՞թե իրենք ամբողջ գիշեր քայլելու են այս քարքարուտներով։

Հանկարծ մի թույլ սուլոց լսվեց։ Արշավայինները կանգ առան։ Սուլեց նաև արշավախմբի ղեկավարը։ Հեռվից եկող սուլոցը կրկնվեց, այս անգամ ավելի ուժեղ։ Ապա սուլոցին հետևեց մի երիտասարդական ձայն.

—Այս կո՞ղմը եկեք, դեպի ձա՞խ. դուք ճանապարհը կորցրել եք...


Նկ. ԱԻԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

—Զգախնեաք, մենք ձեզ դիմավորելու ենք եկել,—լսվեց մի ուրիշ ձայն։

Արշավայինների ուրախությանը չափ չկար. Փոքրավանի երիտասարդներն էին, որ եկել էին նրանց ընդառաջ։ Քիչ հետո հոգնած պատանի տուրիստները Աշոտի, Գագիկի, Զանիկի ու մյուսների առաջնորդությամբ դուրս եկան դեպի գյուղ տանող ճանապարհը, իսկ մի ժամ հետո հասան արդեն հարազատ դարձած, հյուրընկալ գյուղը։ Կոլտնտեսության գրասենյակի առաջ շատ մարդ կար։ Բոլորն էլ ցանկանում էին արշավայիններին տանել իրենց տուն, իրենց հարկի տակ գիշերելու։

Քիչ հետո գրասենյակի առաջ բոցկլտաց խարույկը։ Նրա շուրջը բոլորեցին արշավայինները ու իրենց հյուրընկալները։ Մինչ ուշ գիշեր նրանք երգեցին, պարեցին միատեղ, ուրախացան։ Իսկ առավոտյան, երբ այնքան ցանկալի բարեբեր անձրևը դադարեց ու լեռների պռնկից փայլատակեց պայծառ արեգակը, պատանի տուրիստները դուրս եկան գյուղի սպորտ-հրապարակը։ Այստեղ վոլեյբոլի ցանցի մոտ նրանց էին սպասում իրենց բարեկամները՝ գյուղի պատանիները ու աղջիկները։

Օրվա կեսերին արշավայինները պատրաստվեցին ճանապարհվելու։ Նորից մեծ բազմություն էր հավաքվել գրասենյակի մոտ։

—Դե, ընկերնե՛ր, հրաժեշտից առաջ եկեք միասին նկարվենք,—առաջարկեց Մարտիրոսյանն ու նշան արեց իրենց լուսանկարչին՝ Գրիգորյանին։

Արշավայինները հյուրընկալությունից զգացված էին ու գոհ։ Նրանք ճանապարհ ընկնելուց առաջ միայն կարողացան արտասանել.

—Շնորհակալությո՜ւն, փոքրավանցինե՛ր, շա՜տ շնորհակալություն...

* * *

Արդեն երրորդ տարին է, ինչ տուրիզմը դարձել է Շահումյանի շրջանի № 89 դպրոցի աշակերտների ամառային հանգստի կազմակերպման լավագույն ձևերից մեկը։ Մեծ թվով դպրոցականներ սիրով մասնակցում են դրուժինային կից մշտապես գործող տուրիստական խմբակի և ամառային արձակուրդներին կազմակերպվող տուրիստական ճամբարների աշխատանքներին։

Կյանքում միշտ էլ անմոռանալի են մնում թավ անտառներով ու նեղ կածաններով կատարվող հետաքրքիր արշավները, որոնք քո առաջ, պատանի բարեկամ, բացում են նոր հորիզոններ, որոնք կոփում են քո կամքն ու օրգանիզմը, որոնք սովորեցնում են քեզ վայելել խարույկի վրա քիչ ծխահամված ճաշի յուրահատուկ քաղցրությունը, ունկնդրել անտառի գիշերային խորհրդավոր ձայները, դիտել հայրենի լեռնաշխարհի խաղաղ ու գեղեցիկ այգաբացը։

Ուրեմն դեպի գործ, պատանի բարեկամ, քեզ կանչում են տուրիստական ճամփաները, կանչում են հեռո՜ւ, անծանոթ հորիզոնները, որոնք լի են հետաքրքրություններով ու անակնկալներով։

ԴԵՐԵՆԻԿ ՏԵՐՋԻԿՅԱՆ

(Շահումյանի շրջանի № 89 դպրոցի ուսուցիչ)



# ՍՈՎՈՐԵՑԻՐ ԻՆՔԴ՝ ՍՈՎՈՐԵՑՐՈՒ ԸՆԿԵՐՈՋԴ

1928 թվականին Ծաղկաձորի «Արջաղբյուր» կոչվող անտառամասում երևացին պիոներական առաջին վրանները: Տարիներ անցան, և օրեցօր աճեց ու շատացավ պիոներական ճամբարների թիվը:

Պետական հիմնարկների աշխատողների պիոներական ճամբարը ամենաատարեցն է, ամենահինը: Բայց չնայած իր տարիքին, այդ ճամբարը միշտ պատանեկան նոր խինդով ու եռանդով է շնչում, պահպանում և զարգացնում է իր գեղեցիկ տրադիցիաները: «Սովորեցի՛ր ինքդ՝ սովորեցրու ընկերոջդ»—այս է այդ ճամբարի նշանաբանը: Յուրաքանչյուր տարի մի նոր հետաքրքիր էջ է ավելանում նրա պատմության գրքում: Անցած տարի այդ ճամբարը մի նոր և հետաքրքիր միջոցառման նախաձեռնողը հանդիսացավ:

Առավոտյան տողանի ժամանակ դրուժինայի խորհրդի նախագահ Համիկ Մանուկյանը հայտնեց, որ ճամբարում գործելու է պիոներ հրահանգիչների դպրոց: Այդտեղ երեխաները ձեռք կբերեն անհրաժեշտ հմտություններ և իրենց դպրոցներում նույնպիսի խմբակներ կազմակերպելու իրավունք կստանան:

Այս լուրը շատ ոգևորեց պիոներներին: Այժմ նրանց առաջ դրվեց մի շատ պատասխանատու խնդիր: Բավական չէր լավ պարել, երգել կամ արտասանել, անհրաժեշտ էր գիտցածը սովորեցնել ուրիշներին: Իսկ դա այնքան էլ հեշտ գործ չէ:

Ճամբարում կային շատ շնորհալի երգողներ, պարողներ, խաղավարներ, լուսանկարիչներ: Անմիջապես առանձնացվեցին տարբեր խմբակներ, որոնցում ընդգրկվեցին բազմաթիվ պատանիներ ու աղջիկներ: Միայն թմբկահարների խումբը բաղկացած էր 45 պիոներից:

Ամեն օր վաղ առավոտյան անտառի բացատում լսվում էր դեռևս անփորձ թմբկահարների թմբուկների ձայնը: Շատ ջանասիրություն էր պետք, որպեսզի կարելի լիներ դառնալ թմբուկի «վարպետ»: Խմբակը ղեկավարում էր ճամբարի պետ, փորձված պիոներ-աշխատող Հակոբ Սարգսյանը: Նա համբերությամբ սովորեցնում էր սկզբից պարզ հարվածները, այնուհետև վարժություններն աստիճանաբար բարդանում էին: Եվ չանցած երկու շաբաթ, թմբկահարների խումբը պատրաստ էր, նրանք նոր շուք ու հանդիսավորություն տվեցին ճամբարային շքերթներին, հանդեսներին և խարույկներին:

Որպեսզի որոշվեր, թե տվյալ թմբկահարը կարո՞ղ է ղեկավարել նույնատիպ խմբակ, ճամբարում ստեղծվեց հատուկ հանձնաժողով: Ստուգելուց հետո թմբկահարին տրվում էր վկայական, որով նա իրավունք էր ստանում ղեկավարել նույնպիսի խմբակ: Երբ ճամբարային հերթերն ավարտվեցին, 90 պիոների տրվեց «Պատանի թմբկահարի» կոչում:

Ահա այդտեղի խաղավարները ևս հայտնի են ամբողջ Ծաղկաձորի ճամբարներում: Բոլորի մասին դժվար է ասել: Ձեզ ծանոթացնենք միայն Սամվելի, Սվետլանայի և Էդվարդի հետ:

Մի անգամ պիոներները խարույկի շուրջը կազ-

ռմակեպեցին կառնավալ: Երեկոն, որը շատ հետաքըրքիր անցավ, վարում էին Սամվելը, Սվետլանան և Էդվարդը: Երեխաներին առանձնապես շատ դուր եկավ գազանների պարը: Ահա հրապարակ են մըտնում անտառային գազանները՝ իրենց հատուկ շարժումով ու սրամիտ բացականչություններով: Էդվարդը աղվեսի հագուստով ղեկավարում էր գազանների երթը: Երեխաները պարելով պատկերում էին գազանների սովորությունները. ի՞նչ



մրգեր ու հատապտուղներ են ուտում, ինչպե՞ս են բույն պատրաստում և այլն:

Այնուհետև հանդես եկավ Սամվելը, որի ղեկավարությամբ պիոներները հաջողությամբ կազմակերպեցին «Փղերն ու նապաստակները», «Քամիներ և ծաղիկներ», «Անբույն նապաստակը» և շատ ուրիշ խաղեր: Սամվելը խաղն անցկացրեց շատ աշխույժ, մասնակից դարձնելով բոլոր երեխաներին: Իսկ վերջում երեխաները պարեցին ու երգեցին: Սամվելը, հանդիսավոր կերպով, առաջնությունը շահած պիոներներին նվերներ հանձնեց:

Սվետլանան ոչ միայն շնորհալի պարող է և երգող, այլև հիանալի կազմակերպում է ճամբարի մասսայական միջոցառումները: Նա շատերին է սովորեցրել պիոներական երգեր, հայկական գեղեցիկ ու նազելի պարեր:

Լավ հանգստացած ու կազդուրված՝ պիոներդպրոցականները մեկնում են ճամբարից: Նրանցից շատերը դպրոց են վերադառնում «Պատանի կազմակերպիչի» կոչումով, որպեսզի ճամբարում սովորածը սովորեցնեն իրենց ընկերներին:

**ԿԱՄՈ ՄԿՐՏՉՅԱՆ**

# ՀԱՅԱՍՏԱՆԻ

Տեսե՞լ եք Ջերմուկի ջրվեժը, որի կաթիլների մեջ արևի ճառագայթները ծիածանի շղարշ կազմած՝ իջնում են գլգլացող Արփայի վրա: Ամբողջ ժամերով կարելի է զմայլված մնալ ջրվեժի մոտ ու դիտել այդ հիասքանչ տեսարանը:

Ջերմուկ առողջարանի փոքրիկ սարահարթի կենտրոնական մասը կտրված է Արփա գետի նեղ ու խոր կիրճով, որը Ջերմուկի տերիտորիան բաժանում է երկու մասի: Սարահարթի արևմտյան եզրից բխում է մի հորդառատ գետակ, որն անցնելով հանքային ջրերի մոտից, հասնում է ժայռի գլուխը և այնտեղից թափվում Արփա գետը, առաջացնելով մի սքանչելի ջրվեժ:

Սա Հայաստանի ամենաբարձր ջրվեժն է, որն ունի 70 մետր բարձրություն:

Ջերմուկի հանքային ջրերը և լավաները չորրորդական դարաշրջանի ծնունդ են:

Սովետական Հայաստանի երկրորդ խոշոր ջրվեժը Շաքիի ջրվեժն է, որը գտնվում է Սիսիանի շրջանում: Սա Ջերմուկի ջրվեժից փոքր է, բայց ձայնը լսվում է մոտ երկու կիլոմետր հեռավորությունից:



Թաշկանի ջրվեժը

Շաքի գետակը բարձրաբերձ լեռներում դեմ է առնում մի ժայռի, կազմում լճակ և ութ մետր բարձրությունից ցած է թռչում։ Շաքիի ջրվեժի տակ կառուցված է հիդրոկայան, որն էլեկտրականություն է մատակարարում շրջակա գյուղերին։

Հայաստանի երրորդ ջրվեժը գտնվում է Սպիտակի շրջանում։ Դա Թռչկանի կամ Չիչկանի ջրվեժն է, որի ձայնը լսվում է բավական մեծ հեռավորության վրա։

Եղեգնաձորի շրջանում նույնպես կան ջրվեժներ, որոնք թեև փոքր են, բայց արժանի են ուշադրության։ Գնդեվազի անդնդախոր ձորում կա մի ջրվեժ, որը ճգնարաններ կոչվող ահագին բարձունքից վայր է թափվում։ Գնիշիկի գետակը համանուն գյուղի մոտ կազմում է մի քանի ջրվեժներ։

Սովետական Հայաստանում կան ջրվեժներ, որոնք ամբողջ տարին չեն գործում, ժամանակավոր բնույթ ունեն։

Բարձրացե՞լ եք Արագածի գագաթը, տեսե՞լ եք Արագածի ամեհի ձորը, որն ուղղված է դեպի Ապարան։ Այդ ձորում են հավաքվում ձյան ջրերը, որոնք մի քանի մեծ ու փոքր ջրվեժներ են կազմում և ահագին բարձունքներից աղմուկով գահավիժում ներքև։ Ով տեսել է այդ ջրվեժներից թեկուզ մեկն ու մեկը, նրա հիշողությունից չի ջնջվի այդ հիանալի տեսարանը։ Ձորի հավերժական լռությունը խախտում են այդ ջրվեժների շառաչուն ձայները։



Ջերմուկի ջրվեժը

# ՋՐՎԵԺՆԵՐԸ



Շաքիի ջրվեժը

Փոքր, ժամանակավոր ջրվեժներ կան Վեդու շրջանում։ Ազատ և Վեդի գետերը, որոնք սկիզբ են առնում Գեղամա լեռներից և թափվում Արաքսը, իրենց վերին հոսանքում առաջացնում են մի քանի գեղեցիկ ջրվեժներ։ Խոսրովի անտառում այդ ջրվեժները առանձնապես գեղատեսիլ են դարձնում շրջակայքը։

Լոռիում ևս կան փոքր ջրվեժներ, որոնք ամռանը ցամաքում են։ Հայտնի է Ակների ջրվեժը, որը գրավում է անցորդների ու ճանապարհորդների ուշադրությունը։ Ակների ձորի վերին մասից, ահագին ապառաժների վրայից, սրընթաց վազում է մի առվակ, որը մի փոքր ցած իջնելով, կրկին ապառաժների վրայից ներքև է թափվում։ Ջրվեժի մոտ, առվակի վրա ձգված է մի փայտե կամուրջ։

Հաճելի է նստել այդ կամուրջի մոտ և դիտել ջրվեժի արագ թռիչքները։

ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Լուսանկարները՝ Զ. ԲՇՏԻԿՅԱՆԻ և Բ. ԳԱԶԱՋՅԱՆԻ



# ՄԱՆԿԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Վառ արևը սարի ուսից
Ուրախ-ուրախ ցած նայեց,
Ու մանկական ծաղկած այգին
Աչիկները բաց արեց:
Թռչունների համերգի հետ
Խումբ-խումբ, ահա մտան ներս
Հոկտեմբերիկ և պիոներ՝
Թևավոր ու ժպտերես:
Մի տեղ երգն է հնչում զվարթ
Ծառերի տակ հովասուն,
Մի ուրիշ տեղ խաղում շախմատ
Կամ զրույցներ են լսում:

Տղաներին շոգ կեսօրին
Ավազանն է դուր գալիս,
Թեև նորից տիկնիկային
Ներկայացում են տալիս:
Այս համարձակ աղջկան, տե՛ս,
«Նավակն ի՞նչ է», չի նայում.
Ջրում նստած, հեծյալի պես
Սլանու՞մ է, պտտվում:
Ինչքա՞ն լավ է կարուսելը.
Սլանում են, սլանում,
Բայց, ա՜յ, փոքրիկ մեր հեծյալը
Մայրիկից չի հեռանում:

# ՈՐՏԵ՞Ղ ԵՆ ԱՊՐՈՒՄ ԿԵՏԵՐԸ..

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Իմ անունը Ռուբիկ է: Մայրիկս ասում է, որ շատ անհանգիստ տղա եմ, այսինքն՝ կրակ ու պատիժ (մայրիկս է այդպես ասում): Բայց ես ավելի շատ խելոք եմ մնում, քան անկարգություն անում: Միայն, չգիտեմ ինչու, հենց ուզում եմ դասերս սովորել, միշտ էլ մի բան խանգարում է: Ահա՛: Դուռը ծեծում են: Հաստատ գիտեմ, որ Վանիկն է: Վանիկը իմ ամենամոտիկ ընկերն է: Մենք ապրում ենք միևնույն բակում, սովորում միևնույն դասարանում և մինչև անգամ նստում ենք նույն նստարանին: Միասին ենք գնում կինո, լողալու: Մի խոսքով, ամենաիսկական ընկերներ ենք:*

*— Արի՛,— ասում է նա,— այսօր մեր թիմը խաղում է մյուս բակի տղաների հետ:*

*Ես, իհարկե, շատ եմ ուզում գնալ, բայց ժամանակին հիշում եմ, որ դեռ պետք է դասերս սովորեմ:*

*— Չեմ կարող,— ասում եմ,— ոչ մի դաս չեմ սովորել:*

*— Ոչի՞նչ,— իրենն է պնդում Վանիկը,— ես էլ չեմ սովորել: Հետո կսովորենք: Խաղալուց հետո մարդու ուղեղը թարմանում է:*

*«Ճիշտ է ասում» — մտքում համաձայնվում եմ ես:*

*Գնացինք: Բայց, իհարկե, նորից պարտվեցինք և էլի Վանիկի պատճառով: Նա շարունակ խոսում էր սրա-նրա վրա, իսկ ինքը բոլորից վատ էր խաղում: Մենք խփեցինք տասը գոլ, իսկ մեզ ոչ ավել, ոչ պակաս՝ տասնվեց:*

*Երբ տուն եկա, արդեն ուշ էր: Փորձում եմ կարդալ, իսկ տառերը պարում են աչքիս առաջ: Հոգնածությունից քունս տանում էր: Ստիպված հանգցրի լույսը և պառկեցի քնելու: «Ոչի՞նչ,— մտածում եմ,— առավոտյան կսովորեմ, թարմ ուղեղով ավելի հեշտ է»: Իսկ առավոտյան հազիվ արթնացա ու ինձ գցեցի դուրս: Վանիկը արդեն սպասում էր:*

*— Բարի լույս,— ասում եմ: Իսկ աչքերս դեռ փակվում են:*

*— Բարի լույս,— հորանջում է Վանիկը,— արջի պես ես քնում, մյուս անգամ այսքան չեմ սպասի:*

*— Դե լա՛վ,— ասում եմ,— քե՞զ նայիր: Իսկ դասերը սովորե՞լ ես:*

*— Ո՛չ: Երեկ իզուր ֆուտբոլ խաղացինք:*

*Գնում ենք փողոցով, իսկ Վանիկը շարունակ խոսում է, ավելի ճիշտ, իրեն է մխիթարում:*

*— Ոչի՞նչ, մյուս անգամ լավ կսովորենք:*

*Հազիվ հասանք դպրոց: Քիչ էր մնում ուշանայինք: Հենց զանգի հետ մեզ գցեցինք դասարան: Նստել եմ, բայց տակս կարծես ասեղներ լինեն: Նայում եմ Վանիկին: Նա գիրքը դրել է ծնկներին ու կարդում է: Բայց շուտ-շուտ գլուխը բարձրացնում է ու նայում ընկեր Արամյանին: Մի խոս-*

բով, ավելի շատ դես ու դեն է նայում, քան կարդում։

— Հանգիստ նստիր,— շշնջում եմ նրան,— ախր, դրանով ուշադրություն ես գրավում։

— Լավ,— համաձայնվում է Վանիկը,— երևի շուտով զանգը կտա։

Իսկ զանգը ոչ մի կերպ չի տալիս։

Հանկարծ, տեսնեմ, ընկեր Արամյանը ուղիղ ինձ է նայում։

— Թութի՛կ

«Կորա՜վ» — մտածում եմ։ Ուզում էի ասել, որ չեմ սովորել, իսկ Վանիկը թե.

— Գնա, ես քեզ կհուշեմ։

Գնացի։

— Դե՛, ասում է ընկեր Արամյանը։

— Կետը ջրային կաթնասուն կենդանի է,— շշնջում է Վանիկը։

— Կետը ջրային կաթնասուն կենդանի է,— սկսում եմ ես։

Ընկեր Արամյանը գլխով է անում, այսինքն՝ ճիշտ է։

— Կետերը ապրում են,— հազիվ լսվում է Վանիկի ձայնը։— Ասա՛, ի՞նչ ես ընել։



Բայց այստեղ ընկեր Արամյանը նկատեց, որ Վանիկը հուշում է։

Վանիկը սսկվեց։ Ստիպված՝ նորից սկսեցի.

— Կետը ջրային կաթնասուն կենդանի է։ Կետերը ապրում են...

Այստեղ ես նկատեցի, որ Վանիկը նստարանի տակից քաշել է գիրքը և ինչ-որ բան է ցույց տալիս քարտեզի վրա։ «Ա՜յ թե հնարամիտ է Վանիկը,— մտածում եմ ես,— ասեղի ծակից էլ կանցնի» — ու աչքի պոչով նայում եմ քարտեզին։ Բայց այստեղ սկսեցի անհանգստանալ։ Վանիկը մատը դրել է ամբողջ Կովկասի վրա։ Մտածում եմ. «Ախր, կետերը ջրում են ապրում»։ Իսկ Վանիկը մատը ավելի է սեղմում Կովկասին ու բերանն է ծամում։ Արդեն գիտեմ, որ ասում է. «Ի՞նչ ես ընել»։ Հետո Վանիկը սկսեց բերանը բացել ու փակել։ Բացում է, փակում, իսկ ոչ մի ձայն չի լսվում։ Աշխատում եմ հասկանալ։ Աչքս նորից գցեցի քարտեզին։ Տեսնեմ, Վանիկի մատը այս անգամ Կասպից ծովի վրա է։ «Այս արդեն ուրիշ բան է» — մտածում եմ։ Իսկ ընկեր Արամյանը ինձ է նայում։

— Կետը ջրային կաթնասուն կենդանի է։ Կետերը ապրում են Կասպից ծովում և այլ...

Այստեղ մի այնպիսի ծիծաղ բարձրացավ, որ եթե կարողանայի, գետնին կմտնեի։ Նայում եմ, Վանիկը բոլորից բարձր է ծիծաղում։ Իսկ ձեռքերս ավելորդ ծանրություն են դարձել։ Վերջապես ծիծաղը դադարեց։ Ընկեր Արամյանը ինձ «Երկու» նշանակեց, ու ես վերադարձա տեղս։

Հենց զանգը տվեց, հարձակվեցի Վանիկի վրա.

— Տեսա՞ր,— ասում եմ,— քո պատճառով ինչ ստացվեց։

— Դա ի՞նչ է,— զարմանում է Վանիկը,— օվկիանոսը Կասպից ծովից չե՞ս տարբերում։

— Ինչու՞ տարբերեմ։ Դու Կասպից ծովն էիր ցույց տալիս։

— Ի՞նչ,— աչքերը չռեց Վանիկը։

Իսկ քիչ հետո ասում է.

— Դե, նստարանի տակ ես հո գիրք չեմ տեսնում։

Գնացինք տուն։ Ճանապարհին մտածում եմ, որ սրանից հետո մինչև բոլոր դասերը չսովորեմ, խաղալու չեմ գնա։

Իսկ Վանիկն ասում է.

— Ինձ հետ էլ է այդպես։ Երբ դասը սովորում եմ՝ չեն հարցնում, իսկ երբ չեմ սովորում՝ հարցնում են։ Այսօր բախտս բերեց։ Դա մարդու աչքերից են իմանում, հայրիկն է ասել։

Հենց մտա տուն, ընթրեցի ու սկսեցի դասերս պատրաստել։ Իսկ կետը չի հեռանում աչքիցս։ «Ա՜յ թե խայտառակվեցի» — ասում եմ մտքումս։ Դրսում՝ արդեն մթնել էր, երբ վերջացրի։

Մտածում եմ. «Ի՞նչ անել»։ Գնացի Վանիկենց

տուն։ Իսկ նա ամբողջ սեղանը ծածկել է գրքերով։

— Հերիք է սովորես,— ասում եմ,— արի գնանք զբոսնենք։

Բայց Վանիկը չհամաձայնվեց։

— Տե՛ս,— ասում է,— այսօրվա օրը կընկնենք։

Վերադարձա տուն։ Մի երկու ժամ տանը թրև եկա։ Մտածում եմ. «Իսկ որտե՞ղ են ապրում կետերը»։ Ուզեցի գիրքը բացել, բայց հետո որոշեցի. «Ի՞նչ կարիք կա, անցածը անցած է»։

Պառկեցի քնելու։ Երկար ժամանակ քունս չէր տանում։ Ինչ-որ բան էր ծանրացել սրտիս։ Վերջապես քնեցի։

...Գնացքը սլանում է ամբողջ թափով։ Վանիկը պառկել է հատակին և ձեռքերն ու ոտքերն է թափահարում։

— Այդ ի՞նչ ես անում,— հարցնում եմ նրան։

— Չե՞ս տեսնում, լողում եմ,— պատասխանում է Վանիկը և շարունակում ձեռքերն ու ոտքերը թափահարել։

— Չոր հատակին մի՞թե լողում են։

— Ոչ թե հատակին, այլ՝ ջրում, հո կույր չե՞ս,— ծիծաղում է Վանիկը։

Ես զարմացած շուրջս եմ նայում և ի՞նչ եմ տեսնում։ Մենք Կասպից ծովի ափին ենք։ Արևը ուղղակի այրում է։

— Արի՛,— կանչում է Վանիկը,— ի՞նչ ես կանգնել։

Ես սկսում եմ հանվել։ Մե՛կ, երկո՛ւ և արդեն միայն տրուսիկով եմ։ Մե՛կ, երկո՛ւ և արդեն ճեղքում եմ ալիքները։ Նայում եմ՝ Վանիկը չկա։



Երևի վախեցա՞վ խորը գնալ։ Իսկ ես չեմ վախենում և առաջ եմ լողում։ Ջուրը կապույտ, կապույտ է։ Հանկարծ լսում եմ, որ ինչ-որ մեկը որոտաձայն ինձ է կանչում։

— Ռուբի՛կ։

Նայում եմ շուրջս։ Ոչ ոք չկա։

— Ռուբի՛կ...

Ես սկսում եմ վախենալ։

— Ո՞վ ես դու,— հարցնում եմ։

— Հետո կիմանաս։ Իսկ հիմա պատասխանի՛ր հարցիս,— որոտում է Ձայնը,— ի՞նչ կենդանիներ են ապրում Կասպից ծովում։

— Ձկներ,— պատասխանում եմ ես,— օրինակ՝ տառեխ։

— Տառեխը ի՞նչդ ես,— որոտում է Ձայնը։

— Իսկ դու ո՞վ ես,— գոռում եմ ես։

— Ե՞ս,— քրքջում է Ձայնը,— հա՛, հա՛, հա՛... Ես կետն եմ։

— Կասպից ծովում կետեր չեն լինում,— առարկում եմ ես,— ընկեր Արամյանն է ասել։

— Չե՞ն լինում, հա՛, հա՛, հա՛... Ինչպե՞ս ես համարձակվում ինձ վիրավորել։ Հիմա ես քեզ ցույց կտամ։

Ես վախեցած շուրջս եմ նայում։ Մեկ էլ ի՞նչ տեսնեմ։ Ուղիղ իմ դիմաց լողում է փղից տասն անգամ մեծ մի կետ։ Նա բացել է հսկայական բերանը ու գալիս է ինձ վրա։ Ես ուզում եմ լողալ դեպի ափ, բայց ավելի եմ հեռանում ափից։ Իսկ կետը բոլորովին մոտիկ է։

— Հիմա քեզ կու՜լ կտամ,— որոտում է նա,— հիմա կո՜ւլ կտամ։

Ուզում եմ օգնություն կանչել՝ ձայնս դուրս չի գալիս, թևերս թուլացել են, շունչս կտրվում է։ Ես խեղդվում եմ, իսկ կետը արդեն կողքիս է։ Մի ակնթարթ և շուրջս ամեն ինչ մթնում է։ Ես գլորվո՜ւմ եմ, գլորվո՜ւմ կետի կոկորդով ու հանկարծ դիպչում եմ պինդ բանի...

— Թրը՜մփ...

Աչքերս բացեցի։ Նայում եմ շուրջս։ Իմ սենյակն է։ Ահա գրապահարանը, հայրիկի նկարը, իմ մահճակալը։ Միայն, չգիտես ինչու, ես նստած եմ հատակին։ Մտածում եմ. «Ի՜նչ լավ է, որ երազ էր։ Չէ՞ որ սենյակում կետեր չեն լինում։ Իսկ մի՞թե Կասպից ծովում լինում են»։

Ես վեր կացա, գտա գիրքը, բացեցի և սկսեցի կարդալ.

— Կետը ջրային կաթնասուն կենդանի է։ Կետերը ապրում են մեծ մասամբ օվկիանոսներում և հեռավոր արևելյան ծովերում։ Կետերը...

Ես վերջացրի կարդալը և մտա անկողին։

Պառկել ու մտածում եմ. «Ինչպե՞ս առաջ չգիտեի, որ կետերը ապրում են օվկիանոսներում։ Ինչպե՞ս է, որ այդքան հսկա, սարի չափ կենդանին սնվում է մանրիկ կենդանիներով»։ Հետո հիշեցի Վանիկին։ Չէ՛, մենք լավ ընկեր ենք, շատ լավ, միայն մի քիչ... Ես քնեցի։

# Երևանյան լիճը






Սկսվել է Երևանյան լճի շինարարությունը, որը հայտարարված է իբրև ժողովրդական կառույց: Ապագա լիճը կունենա 65 հեկտար ջրային մակերես, 25 մետր խորություն: Նրա շուրջը կստեղծվեն հանգստի և ջրային սպորտի զարգացման բոլոր հարմարությունները: Լիճը կնպաստի քաղաքի հարավային շրջանների կլիմայի մեղմացմանն ու խոնավացմանը: Գեղեցիկ է լինելու Երևանյան լիճը, գեղեցիկ, ինչպես Երևանը, որը դուրս է եկել իր սահմաններից, իր մեջ առնելով Հրազդան գետը: Կիրականանա մայրաքաղաքի աշխատավորների վաղեմի ցանկությունը՝ ունենալ Երևանյան լիճ: Այն կառուցվելու է Հրազդանի ձորում, ուր գետի հովիտը լայնանում, հասնում է 550 մետրի, իսկ երկարությունը կազմում է 1500 մետր: Կիրճի նեղ մասում կառուցվող պատվարի բարձրությունը ջրի մակերեսից կլինի 8 մետր: Ամբարտակի շնորհիվ Թամանցիների փողոցը կշարունակվի և կհատվի Էջմիածին տանող ճանապարհի հետ ու կմիանա Շահումյանի կենտրոնական մայրուղուն: Ընդամենը 3 տարի՝ կտևի լճի շինարարությունը: Ջուլության հետ մեկտեղ Երևանյան լիճը բերկրանք և խնդություն կպարգևի մեզ: Որքա՜ն են երազել մեր պատանիներն ու աղջիկները լողալ ծովում, հանգստանալ ծովափին, հիանալ ծովի գեղեցկությամբ, ունկնդրելով նրա ալիքների մեղմ ծփանքին: Նրանք այլևս չեն լողանա Հրազդանում, որը արագահոս, քարքարոտ ու տեղ-տեղ ծանծաղ լինելու պատճառով վտանգավոր է և քիչ բավականություն է պատճառում: Լողանալ սիրում են բոլորը՝ և՛ հիվանդները, և՛ առողջները: Ո՛չ մի բժիշկ, ո՛չ մի դեղ այնպես չի հանգստացնում ու բուժում մարդկանց ջղերը, ինչպես ջուրը: Ջուրը անհամբեր, անհանգիստ և որոշ չափով կոպիտ մարդկանց դարձնում է համբերատար, մեղմ ու բարի:

Գեղեցիկ է լինելու Երևանյան լճափը: Ջրային ու արևային լոգանքի համար կհավաքվի հոծ բազմություն, ավազի մեջ խրված մանուկները խաղալիք բուրգեր կկառուցեն կամ ջուրը մտած՝ կաշխատեն ընդօրինակել բադերին: Ջրի վրա կսահեն առագաստանավերն ու շարժիչավոր նավակները: Մանուկների հնչուն ծիծաղը կտարածվի ափերի երկայնքով, որտեղ փռված կլինեն գբոսայգիներ, տաղավարներ, նավամատույցներ: Այս բոլորը՝ հանուն առողջության, բերկրանքի ու հանգստության:

Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ
(Բժիշկ)

## ԻՆՉՊԵՍ ՉՈՐԱՑՆԵԼ ԲՈՒՅՍԵՐԸ

*Ձեզանից շատերը, երեխանե՛ր, ամռանը բազմաթիվ բույսեր կհավաքեն դպրոցի բնագիտական կաբինետի համար, հավաքածուներ կկազմեն: Այդ աշխատանքը շատ հետաքրքիր է: Նախքան հավաքածու կազմելը, պետք է խնամքով առանձնացնել անհրաժեշտ բույսերը, նախապատրաստել չորացնելու համար: Լավ չորացման դեպքում, պահպանվում է բույսի արտաքին տեսքը, մասամբ էլ նրա գույնը: Բույսեր չորացնելու տարբեր ձևեր կան. ամենալավ միջոցներից մեկը ավազի մեջ չորացնելն է:*

*Գետափից դույլով տան բերեք մանր ավազ: Լցրեք մի արկղի մեջ և մի քանի անգամ լավ լվացեք (ջուր լցրեք ավազի վրա և թողեք, որ նա քամվի), այնուհետև ավազով լի արկղը դրեք արևի տակ, հաճախակի խառնեք, որպեսզի տակի խոնավ շերտը ևս չորանա: Երբ ավազը պատրաստ կլինի, նրա մեջ փոքրիկ փոս փորեք, այնտեղ դրեք ձեր անհրաժեշտ ծաղիկը, տերևը կամ ամբողջ բույսը, ծածկեք այն ավազի բարակ շերտով և կրկին արկղը դրեք արևի տակ: Որոշ ժամանակ անց, հավաքածուի համար անհրաժեշտ բույսը պատրաստ կլինի: Այս եղանակով չորացնելու առավելությունն այն է, որ բույսը չի ջարդվում, չի ճմրթվում և, որ կարևորն է, մասամբ պահպանում է բնական գույնը:*

ՄՈՎՍԵՍ ԼԵՎՈՆՅԱՆ

# ԻՆՉ ԵՎ ԻՆՉՈՒ ՀԱՎԱՔԵԼ

Դժվար թե գտնվի մի մարդ, որն իր մանկության կամ պատանեկության տարիներին հրապուրված չլինի կոլեկցիա հավաքելով, իսկ շատերը այդ գրավիչ գործով զբաղվում են նաև հետագայում: Հարցրեք ձեր մեծերին և հաճախ կլսեք մոտավորապես այսպիսի պատասխան. «Դե, իհարկե, հավաքել եմ, մետաղե դրամներ եմ հավաքել և ինչպե՜ս էի տարված...»

Բայց կան երեխաներ, որոնք ուղղակի զարմանում են, թե ինչի են պետք լուցկու պիտակները կամ նամականիշերը: «Ավելորդ գլխացավանք է»— ասում են նրանք: Իհարկե, այդպես մտածողները սխալվում են:

Կոլեկցիա հավաքելը շատ օգտակար, գրավիչ և հետաքրքիր զբաղմունք է: Նախ եկեք պարզենք, թե ինչ բան է կոլեկցիան: Ձեզանից շատերը սիրում են հավաքել ամեն պատահած բան և հավաքածն էլ թողնում են անուշադիր ու անխնամ: Դա, իհարկե, կոլեկցիա չէ: Կոլեկցիան միատեսակ իրերի հավաքածու է, որ ներկայացնում է գիտական, պատմական կամ գեղարվեստական հետաքրքրություն: Ձեզանից շատերը երևի զարմացան ու ժպտացին՝ կարդալով այս տողերը, բայց երևակայեցեք, որ խնամքով հավաքած կոլեկցիան, լինի դա մեծ թե փոքր, իրոք իրենից որևէ հետաքրքրություն է ներկայացնում:

Դրա համար նախ պետք է իմանալ, թե ինչ և ինչպես հավաքել: Իսկ հավաքել կարելի է հին թղթադրամներ և մետաղե դրամներ, լուցկու պիտակներ, գեղարվեստական բացիկներ, կրծքանշաններ, նամականիշեր, միջատներ, հանքաքարեր և այլն:

Երբ մեկն սկսում է կոլեկցիա հավաքել, նա միաժամանակ լրացնում է իր գիտելիքները: Ասենք՝ մեկը հավաքում է գեղարվեստական բացիկներ, և նրանց մեջ կան Ռուբենսի նկարներից: Նկարները նրան դուր են գալիս, բայց նա չգիտի, թե ով է Ռուբենսը, որտեղ և երբ է ապրել:




Նա սկսում է հարց ու փորձ անել մեծերին, տեղեկություններ փնտրել գրքերում, նոր գիտելիքներ է ձեռք բերում, սկսում է ավելի լավ հասկանալ գեղանկարչությունը: Աստիճանաբար մեծանում է նրա կոլեկցիան, ավելանում են գիտելիքները: Դե, ասեք, մի՞թե սա «ավելորդ գլխացավանք» է և մի՞թե այդ կոլեկցիան հետաքրքրություն չի ներկայացնում:

Դուք լսած կլինեք, երեխաներ, Մոսկվայի Տրետյակովյան պատկերասրահի մասին, որտեղ հավաքված են մեր երկրի լավագույն նկարիչների գործերը: Բայց գիտե՞ք արդյոք, որ այդ պատկերասրահը սկիզբ է առել կոլեկցիայից: Ռուս արվեստասեր Պ. Մ. Տրետյակովը անցյալ դարի կեսերին հավաքելով իր ժամանակի նշանավոր նկարիչների գործերը՝ հիմնեց պատկերասրահ, որն այժմ համաշխարհային հռչակ է վայելում:

Նշանավոր մարդկանցից շատերն են զբաղվել կոլեկցիաներ հավաքելով, իսկ նրանցից ոմանք էլ այդ կոլեկցիաները հետագայում դարձրել են գիտական գործունեության ասպարեզ:

Ռուս ծովային Վ. Ի. Դալը հիսուն տարուց ավելի զբաղվել էր բառեր հավաքելով, և դրա արդյունքը եղավ այն, որ նա կազմեց չորս հատորանոց նշանավոր բառարանը: Ակադեմիկոս Ա. Ե. Ֆերսմանը, որը վեց տարեկան հասակից տարված էր հանքաքարեր հավաքելով, այնքան հրապուրվեց այդ գործով



որ իր հետագա ամբողջ կյանքը նվիրեց երկրաբանությանը, իսկ նրա հանքաքարերի հարուստ կոլեկցիայի հիման վրա ստեղծվեց ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի երկրաբանական թանգարանը:

Կոլեկցիա հավաքողը ակամայից դառնում է ավելի հետաքրքրասեր, խուզարկու, նա ձգտում է շատ բան իմանալ, կապվում է արվեստի կամ գիտության այս կամ այն բնագավառի հետ:

Մենք պարզեցինք, թե ի՞նչ կարելի է հավաքել և ի՞նչ նշանակություն ունեն կոլեկցիաները, իսկ թե ինչպես պետք է հավաքել, մենք կպատմենք հերթականությամբ, ըստ կոլեկցիաների տեսակների: Այս անգամ եկեք զրուցենք նամականիշերի մասին:

### *«Երկրի այցետոմսերը»*

Այսպիսի անուն են ստացել նամականիշերը ֆիլատելիստների (նամականիշեր հավաքողների) մոտ: Եվ իրոք, չէ՞ որ այդ փոքրիկ, բազմագույն նամականիշերը պատկերում են տվյալ երկրի կյանքը, նրա նշանավոր իրադարձությունները, մարդկանց, բնական աշխարհը, տնտեսությունը: Նայում ես որևէ երկրի փոստային նամականիշին, և քո մեջ ցանկություն է առաջանում ավելի շատ բան իմանալ այդ երկրի մասին, ուսումնասիրում ես քարտեզը, ուզում ես ինքդ էլ լինել այնտեղ:

Սա դեռ բավական չէ: Ապա խոշորացույցով ուշադիր նայեցեք նամականիշերին: Չէ՞ որ դրանք բարձրարվեստ գեղարվեստական մանրանկարներ են, որոնց վրա քրտնաջան աշխատանք են թափել բազմաթիվ նկարիչներ:*

Կոլեկցիա հավաքելու համար նամականիշերը շատ հարմար են և համեմատաբար ավելի հեշտ են ձեռք բերվում: Բացի այդ, դրանց պահպանումը առանձին դժվարություն չի պահանջում:

Ի՞նչ է հարկավոր ֆիլատելիստին. ալբոմ, սոսնձած թուղթ և խոշորացույց: Նամականիշերը ալբոմում կպցնելուց առաջ խոշորացույցով պետք է կարդալ, թե ինչ է նրա վրա գրված, որ պետությանն է պատկանում, ապա սոսնձած թղթի բարակ շերտը պետք է ծալել, և թրջելով մի մասը, կպցնել նամականիշին, իսկ մյուսը՝ ալբոմին: Այս ձևով նամականիշը լավ է պահպանվում և պոկելու դեպքում չի փչանում:

Իսկ ինչպե՞ս կարելի է նամականիշեր հավաքել: Առաջին քայլերն անողները կարող են դրանք ձեռք բերել ծրարների վրայից, խնդրել հին կոլեկցիոներներից: Բացի այդ, խանութներում վաճառվում են փոքրիկ ծրարների մեջ նամականիշերի առանձին սերիաներ: Իսկ երբ դուք արդեն բավական հավաքած կլինեք, և ձեր ծանոթության շրջանները կընդարձակվեն, կարող եք նամակագրական կապ հաստատել մեր երկրի այլ քաղաքների դպրոցականների հետ և նամականիշեր փոխանակել: Այսպես ձեր կոլեկցիան կսկսի աճել:

Սակայն պետք է հավաքելիս ևս որոշ կարգ պահպանել: Չէ՞ որ աշխարհի բոլոր նամականիշերը հնարավոր չէ հավաքել: Սկզբում կարելի է հավաքել ամեն տեսակի նամականիշ՝ կոլեկցիայի հիմքը դնելու համար, բայց երբ բավական հավաքված կլինի, այն ժամանակ կարելի է ընտրություն կատարել: Կարելի է հավաքել միայն մեկ երկրի նամականիշերը կամ, ասենք, սպորտի, նշանավոր մարդկանց, կենդանական և բուսական աշխարհին, երկրի տնտեսությանը և այլ բնագավառներին նվիրված նամականիշեր: Ֆիլատելիստը

---

Առաջին դրոշմանիշերը, որոնք հակառակ կողմում ունեցել են սոսինձ, եղել են անգլիական «Սև պեննիները»: Նրանց վրա նկարված էր Վիկտորիա թագուհու գլուխը: Դրոշմանիշերը վաճառքի դուրս եկան 1840 թվականի մայիսի 1-ին:

1913 թվականին Չինաստանում թողարկվել են դրոշմանիշեր, որոնց մեծությունը եղել է 25×7 սմ: Դրանք ամենամեծ դրոշմանիշերն են:

1863—1866 թվականներին Բոլիվարում (Արգենտինա) թողարկվել են դրոշմանիշեր, որոնց մեծությունն էր 8×9 միլիմետր: Դրանք ամենափոքր դրոշմանիշերն են, որոնք հայտնի են ֆիլատելիստներին:

Բնական է, որ ամենահազվագյուտ դրոշմանիշերը համարվում են նրանք, որոնք գոյություն ունեն միայն մեկ օրինակով: Այդպիսիներից ամենանշանավորը 1856 թվականի մեկ ցենտանոց դրոշմանիշն է, որ թողարկել է Բրիտանական Գվիանան: Դա հիմա ամենաթանկարժեք դրոշմանիշն է (100 հազար դոլլար):



պետք է միաժամանակ իմանալ, որ նամականիշերը թողարկվում են սերիաներով՝ միանման նամականիշը տպագրվում է տարբեր գներով ու տարբեր գույներով, և արժեքավոր է համարվում այն կոլեկցիան, որտեղ կան յուրաքանչյուր սերիայի բոլոր նմուշներից:

Աշխարհի տարբեր երկրներում հրատարակվում են հատուկ կատալոգներ, որտեղ մանրամասն տեղեկություններ են տրվում լույս տեսնող նամականիշերի մասին: Սովետական կատալոգներ կարելի է ձեռք բերել խանութներում կամ հին կոլեկցիոներների մոտ: Այժմ աշխարհում նամականիշեր հավաքելով զբաղված է ավելի քան 45 միլիոն մարդ: Տարբեր երկրներում կազմակերպվում են ֆիլատելիստական ցուցահանդեսներ, հավաքներ: Նշանավոր շատ մարդիկ են իրենց ազատ ժամանակը նվիրել են այդ գրավիչ և հետաքրքիր զբաղմունքին: Էնգելսը նամականիշեր էր հավաքում Մարքսի աղջկա համար, ֆիլատելիստներ են եղել ակադեմիկոս Ի. Պավլովը, գրող Վ. Բրյուսովը, ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռուզվելտը և շատ ուրիշներ: Այժմ նամականիշեր է հավաքում Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ջավահարլալ Ներուն:

Մեզ մոտ, Հայաստանում, ևս շատ կան ֆիլատելիստներ: Նրանցից մեկը Ցոլակ Մելյանն է: Նա արդեն հասակն առած մարդ է, սակայն պատանու եռանդով զբաղվում է ֆիլատելիայով: Նա նամականիշեր սկսել է հավաքել մոտ հիսուն տարի առաջ, երբ հութ տարեկան էր, իսկ վերջերս նրա հարուստ կոլեկցիան, որը Սովետական Միությունում եզակի կոլեկցիաներից է և բաղկացած է աշխարհի բոլոր երկրների հին ու նոր ավելի քան 70 հազար նամականիշից, հանձնվեց ՍՍՌՄ կապի մինիստրությանը, որպես թանգարանային էքսպոնատ: Այժմ Ցոլակ Մելյանը հավաքում է միայն Սովետական Միության նամականիշերը և աշխարհի բոլոր երկրների սպորտային նամականիշերը: Սպորտային նամականիշերի նրա կոլեկցիան այժմ համարվում է առաջինը Անդրկովկասում:



Այստեղ դուք միայն թվեր կարդացիք, որոնք ասում են, որ հին կոլեկցիոներները հսկայական թվով նամականիշեր է հավաքել: Բայց եթե խոսեք նրա հետ, կհամոզվեք, թե որքան շատ բան գիտի այդ մարդը: Նա ձեզ հետ կարող է ժամերով խոսել աշխարհագրության, պատմության, գիտության այլևայլ հարցերի շուրջը, ու դուք երբեք չեք ձանձրանա: Իսկ գիտե՞ք, որ այդքան բազմազան գիտելիքներ ձեռք բերելուն նրան մեծապես նպաստել ու օգնել է այդ փոքրիկ ու գունագեղ նամականիշը:

*ՎԱՀԵ ԵՐԿԱՆՅԱՆ*

ՀՈՎՀԱՆՆԵՍ
ԱՍԱՏՐՅԱՆ



ԱՐԱՐԱՏ



ՀՈՎՀԱՆՆԵՍ
ԱՍԱՏՐՅԱՆ

ԾԱՂԿԱԾ ԾԱՌԵՐ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՍԱՏՐՅԱՆ — ՈՒՇ ԱՇՈՒՆ

Սիրելի երեխաներ, մենք ձեզ ուզում ենք ծանոթացնել նկարիչ Հովհաննես Ասատրյանի ինքնատիպ ու գունեղ արվեստի մի քանի նմուշների հետ։

Ասատրյանի թեման Հայաստանի բնությունն է, կամ իր իսկ խոսքերով ասած՝ Հայրենիքը, որը նրան այստեղ բերեց հեռավոր Բեյրութից։ Արտասահմանում ևս նա իր կտավներում պատկերում էր հարավի արևն ու կապույտ երկինքը, բայց դրանք հայրենի արևն ու հայկական կապույտը չէին։

Ասատրյանը Սովետական Հայաստան գալով, կարճ ժամանակամիջոցում ստեղծեց մի շարք գեղեցիկ բնանկարներ, մեծերի ու երեխաների դիմանկարներ և շատ ու շատ այլ գործեր։

# ՄԻ՞ԹԵ ԿԱՐԵՆԸ „2“ Է ՍՏԱՑԵԼ

ԼԵՎՈՆ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Երբ առաջին օրը Կարենին դպրոց տարան, միայն Սիրանույշ տատը տխրեց։

— Էհ, մենակ մնացի,— խոհանոց մտնելով, ինքն իրեն խոսեց նա։— Էս յոթ տարի է, չգիտեի ինչ բան է տխրությունը։

Բայց շուտով դպրոցը տատին մի նոր ուրախություն բերեց։ Այդ ուրախությունը նրան առաջինը հաղորդեց... դռան զանգը։ «Ինչպե՞ս թե՝ դռան զանգը»— կհարցնեք դուք։

Այ թե ինչպես։

Երբ Կարենը դպրոցից տուն էր գալիս, ուրախ-ուրախ բացում էր օրագիրը և ցույց տալիս բոլորին իր «4»-երն ու «5»-երը։ Ուրախանում էին բոլորը։ Մի օր էլ մտքում կրկնելով իր ստացած «5» թվանշանը, Կարենը մոտեցավ դռանը և ակամայից հինգ անգամ սեղմեց կոճակը։ Սիրանույշ տատն անհանգստացած վեր թռավ տեղից՝ ինչ-որ վատ բան գուշակելով, բայց դռան շեմքին նա տեսավ Կարենին՝ ուրախ ծիծաղելիս։

— Տատիկ, «5» եմ ստացել, «5»։

— Բայց ինչո՞ւ ես այդպես սեղմում կոճակը, ես էլ կարծում էի...

— Ո՛չ, տատիկ, 5 անգամ սեղմեցի, որ իմանաս «5» եմ ստացել։

Ու այսպես, տատիկը սովորեց Կարենի զանգերին։

— Զը՛նգ... զը՛նգ... զը՛նգ... զը՛նգ... զը՛նգ...

— Վո՜ւյ, ջանին մեռնեմ, նորից «5» է ստացել,— վեր թռչելով տեղից՝ դեպի դուռն էր վազում Սիրանույշ տատը։

Ու այսպես, մի օր «4», մի օր «5» զանգ, և տատը ուրախ վեր էր թռչում, բացում դուռը, համբուրում թոռանը։

Բայց այնպես պատահեց, որ դռան զանգը հնչեց երկու անգամ։

— Վո՜ւյ, քոռանամ ես, «2» է ստացել,— վեր թռավ տեղից տատը և ծանր



քայլերով մոտեցավ դռանը. Նրա դեմ կանգնեց Կարենը՝ այս անգամ գլուխը կախ։



— Չե՞ լինի, որ երկու զանգ չտաս, հոգիս բերանս եկավ։

Բայց տատի անհանգստությունը երկար չտևեց։ Հաջորդ օրերին նորից հընչեցին երկար զանգերը...

Սիրանույշ տատը շատ էր տխրում ու անհանգստանում, երբ գործին անտեղյակ մարդիկ, հյուր գալիս սեղմում էին կոճակը մեկ կամ երկու անգամ... «Մի՞թե Կարենը նորից «2» է ստացել»—անհանգըստանում էր Սիրանույշ տատիկը։





# ԽԵԼԱՑԻ ՄԱՐԳԱՐԻՏԸ

ԱՐՏՈՒՇ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մայրը բերում է տետրեր,
Այբբենարան ու մատիտ.
—Շուտով կգա սեպտեմբեր,
Իմ խելացի Մարգարիտ:

Մարգարիտը ծափ վարկում,
Գիրկն է ընկում մայրիկի,
Բայց նվերներն է հիշում,
Ետ է դառնում նա կրկին:

Եվ մոռացած երգ ու խաղ,
Պրպտում է անվիջում,
Գիրքն է թերթում աջ ու ձախ.
Ե՛վ գրում է, և՛ ջնջում:

Մերթ գծեր է քաշում ծուռ,
Դնում կետեր ու նշան,
Մերթ լարում է միտքը սուր,
Բառեր ասում վանկավան:

Վարժ կարդալ է ուզում նա,
Գրել պարզ ու գեղեցիկ,
Որ բոլորը հիանան,
Ասեն՝ ա՛յ քեզ լավ աղջիկ:

# ՏԱՓԿՆՈՑԻ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Լալան ու՛ր է,
Լալան ու՞ր է,
Ձայն չի տալիս, ի՞նչ էլ լուռ է:
Տեսնես այդ ու՞ր է գնացել,
Թե՞ սենյակում թաք է կացել:
Պահարանի մե՞ջ է պահվել,
Վարագուրո՞մ է ծածկվել,
Սեղանի տա՞կն է երևի:
Լալա՛, ու՞ր ես, դե դուրս արի...
Վո՛ւյ, կորել է մեր Լալիկը,
Լաց է լինում խեղճ մայրիկը.
Ո՞վ կա այդտեղ, դե շուտ հասեք,
Միլիցիոներ քեռուն ասեք,
Շուտ ամեն տեղ զանգահարեք,
Հայրիկին էլ լուր հասցրեք,
Ասեք՝ չկա մեր Լալիկը,
Լաց է լինում խեղճ մայրիկը...
Լալա՛, ու՞ր ես, Լալա՛ դու՛րս եկ:
Վա՜յ, այստե՛ղ է. տեսե՛ք, տեսե՛ք.
Ծի՞կ...



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

# ՇԱՏԱԽՈՍ ԱՂՋԿԱ ԽՐԱՏԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ



*Այ ժամացույց,*
*ժամացույց,*
*Դու չե՞ս հոգնում*
*Խոսելուց:*
*Մի բերան հենց՝*
*Թի՛կ հա թի՛կ...*

*Բա դու չունե՞ս*
*Մի տատիկ,*
*Որ քեզ ասի.*
*«Սուս արա,*
*Գլուխներս*
*Դու տարար»:*
*Հերիք խոսես ու շարժես*
*Սլաքներ ու ճոճանակ.*
*Քո չափ թե որ ես խոսեմ,*
*Տատն ինձ կասի՝*
*Չաչանակ:*




# ՄԵՐ ԶԲՈՍԱՆՔԸ

ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ

Իմ ավտոյով, կիրակի,
Գնում էի զբոսանքի:
Մարոն խնդրեց տանեմ տուն
Կարոն խնդրեց տանեմ տուն,
Սարոն խնդրեց տանեմ տուն:
Իսկ Սեդայի տատիկը,
Գրկին փոքրիկ Սաթիկը,
Դռնից կապեց շնիկին,
Ելավ-նստեց իմ կողքին:
Ճռճռալով հասանք տեղ,
Տվեց անիվ, դոնակ, մեխ...
Ավտոն առած մեր մեջքին,
Հազիվ հասանք վարպետին:

# ԿԻԿԼԻԿՈ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Ծիկ, ծիկ,
Ծիկլիկո,
Մի ճուտ ծնվեց
Կիկլիկո,
Ոսկեկտուց, խատուտիկ,
Մազը թավիշ, պուտպուտիկ:
Քաշել էր նա իր պապին,
Էլ չնայեց իր չափին.
Ձվից ելավ, ճոխորտաց,
Ձայնը գցեց, ծղրտաց.
— Կիկլիկո՜,
Ծիկլիկո՜,
Աքաղաղ եմ,
Աքաղաղ,
Ո՛չ ահ ունեմ,
Ո՛չ էլ վախ,
Կուտ տվեք ինձ՝
Գիրանամ,
Ջուր տվեք ինձ՝
Զորանամ:
Աճի թառլան հասակս,
Ցցվի կատար-թասակս,
Այնպես վլվի իմ կանչը,
Ծակի մարդկանց ականջը,
Հագնեմ նախշուն փետուրներ,
Թռնեմ ելնեմ կտուրներ,
Գյուղ-գեղովի ճանաչեն,
«Կտրիճ» աքլոր ինձ կանչեն:



# ՊԱՊԻԿԸ

Թույլ քերծվել էր մատիկը.
Բայց ճղճղան Սաթիկը
Չէր մեղմանում, չէր լռում,
Լաց էր լինում ու գոռում.
— Վա՜յ, մատիկս,
Մատիկս...

Տատ ու պապիկ
Դուրս թռան,
Էն վախկոտին
Գիրկն առան,

# Թե ինչպես Նշանը նկարեց իրենց շանը

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի կողմ թողած
Իր փայտե ձին,
Առած ներկեր,
Թուղթ ու վրձին,
Նկարչասեր
Մեր Նշանը
Նկարում էր
Իրենց շանը.
Ու խեղճ տղան
Շատ էր տանջվում.
Ինչ անում էր,
Չէր ստացվում:
Հիմա կասեմ
Ձեզ գաղտնիքը,
Մեղավոր էր
Շնիկն ինքը...
Մեկ շարժում էր
Պոչը բրդոտ,
Մեկ հեռու էր
Նստում, մեկ՝ մոտ,
Շոգից լեզուն
Դուրս էր հանում,
Ճանճերին էր
Պոչով վանում.

Մեկ էլ հանկարծ
Տեղից թռչում,
Անցորդների
Վրա հաչում:
Հարձակվում էր
Կատվի վրա.
Դե, այդպես է
Գործը նրա...
Շփոթվել էր
Տղան այնպես,
Որ ներկել էր
Քիթ ու երես...
Այդ անհանգիստ,
Բրդոտ շանը
Ո՞նց նկարեր
Խեղճ Նշանը:



# ՏԱՏԻԿԸ ԵՎ ՍԱԹԻԿԸ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Համբուրեցին,
Սիրեցին.
Բամբակ ու բինտ
Բերեցին,
Փաթաթեցին
Մատիկը.
— Ոչինչ, — ասաց
Տատիկը.—
Երկու վայրկյան որ մնա,
Կլավանա՝ կգնա...
— Ճիշտ է, — ասաց
Պապիկը,—
Ուղիղ այդքան որ մնա,
Կլավանա՝ կգնա...

Ուրախացավ
Սաթիկը,
Ու լավացավ
Մատիկը...

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



# ՎԵՐԱԴԱՐՁ

(Գիտա-ֆանտաստիկ պատմվածք)

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



ու կանգնեց, տարածեց ձեռքերը, մի քանի անգամ տեղում նստեց, վեր կացավ ու ասաց.

— Խնդրում եմ լույս:

Սրահում լույսն ուժեղացավ:

Նայեց շուրջը: Ապա մոտեցավ պատուհանին ու դեմքը հպեց ապակուն: Դրսում միայն խավար էր: Մեղմ, կապտավուն երանգ ուներ այդ խավարը, որի վրա ցրված էին փոքր ու մեծ, կարմիր ու նարնջագույն, երբեմն էլ ճերմակ, կուրացնող ճերմակ աստղերը:

Արևն արդեն երևում էր: Մյուս աստղերի հետ համեմատած, նրա սկավառակը փոքր-ինչ մեծացել էր, ու գույնն էլ որոշակի դեղին էր դարձել:

Աստղաթիռը գնում էր դեպի արևը: Իսկ աստղաթիռում գտնվող մարդը Երկիր էր ձգտում:

Ապա նա հեռացավ ապակուց: Նախաճաշի փոխարեն ոտքի վրա շոկոլադ խմեց և դուրս եկավ սրահից: Աշխատասենյակում նա անելիք չուներ: Միայն աչքի անցկացրեց իր հանգստի ընթացքում ապարատների տված նոր տվյալները, վճռեց, որ թռիչքը ուղիղ է ընթանում նախատեսված ծրագրի համապատասխան, գոհունակությամբ ժպտաց և մոտեցավ իր վաղեմի ընկերոջը:

— Բարև,— ասաց նա:

— Բարև,— պատասխանեց նրա միակ ընկերը: Եվ ապա.— Լա՞վ հանգստացար:

— Շնորհակալություն,— և նա նայեց ընկերոջ նիկելափայլ պատյանի վրա շողացող միակ աչքին: Երբ ռոբոտը խոսում էր, այդ աչքը սկսում էր թարթել:

Աստղաթիռում նրանցից բացի ոչ ոք չկար: Երկուսով էին. մարդը և ռոբոտը:

— Մենք դեռ երկա՞ր ենք գնալու,— հարցրեց մարդը:

— Եվս քառասուն օր: Քառասուն օր հետո կլինենք Արեգակի համակարգում:

Մարդը լռում էր:

— Դու գո՞հ ես,— հարցրեց ռոբոտը:

— Այո՛:

— Դու շտապո՞ւմ ես:

— Այո՛,— պատասխանեց մարդը:

Մեքենան քրքջաց: Աշխատասենյակի պատերն արձագանքեցին նրան, և մարդը շփոթվեց:

— Ինչո՞ւ ես ծիծաղում,— բարկացավ նա:— Տանել չեմ կարողանում:

— Ճիշտ չես ասում,— նկատեց մեքենան:— Լավ եմ հիշում, հինգ տարի առաջ, երբ մենք նոր էինք սկսել թռիչքը, դու սիրում էիր իմ ծիծաղը: Լավ եմ հիշում: Դու էլ էիր ինձ հետ ծիծաղում: Դու ինձ նույնիսկ զվարճալի զրույցներ էիր պատմում:

— Այո՜,— ասաց մարդը:

— Ես ծիծաղում էի ոչ թե քո պատմությունների վրա,— խոստովանեց ռոբոտը:— Ես մարդ չեմ, որ զգամ ուրախ կատակը: Ես միայն ծիծաղել գիտեմ և, քանի որ դա քեզ հաճելի էր, ծիծաղում էի:

Մարդը թեքվեց դեպի կանաչ աչքը:

— Հիմա դուր չի գալիս:

Մեքենան թարթեց ավելի արագ ու ասաց.

— Տարօրինակ է, որ դու շտապում ես: Իսկ տարօրինակ բաների վրա անհրաժեշտ է ծիծաղել:

Մարդը մոտ քաշեց ճոճաթոռը և նստեց ընկերոջ դիմաց: Մարդը ուզում էր իմանալ, թե էլի ինչ անակնկալ է հայտնելու մեքենան: Նա վաղուց էր վարժվել իր ուղեկցի դատողություններին, վարժվել էր, որովհետև գիտեր. ուղեկիցը, այնուամենայնիվ, մեքենա է, մի սովորական մտածող մեքենա: Բայց ռոբոտը կարողանում էր այնպիսի տպավորություն ստեղծել, որ մարդը երբեմն մոռանում էր նրա մեքենա լինելը:

— Շտապում եմ, կարոտել եմ Երկիրը,— ասաց մարդը:— Իսկ դու ինձ մի՛ ծաղրիր:

— Ծաղրել չգիտեմ: Ես սովորական մեքենա եմ: Բայց դու միամիտ ես: Երկրի վրա քեզ ոչ ոք չի սպասում:

Մարդը չպատասխանեց:

— Ոչ ոք չի սպասում,— կրկնեց ռոբոտը:— Որովհետև մեր աստղային թռիչքի հինգ տարիների ընթացքում Երկրի վրա անցել է երկու դար:

— Ճիշտ է: Երկուհարյուր տասնվեց տարի,— ասաց մարդը:

— Եվ քեզ թվում է, որ կլինե՞ն նրանք, ովքեր քո ծանոթներն են, բարեկամները, հարազատները: Ո՛չ, նրանք չեն լինի: Մարդիկ երկու հարյուր տարի չեն ապրում:

Մարդը չպատասխանեց:

— Դու չլսեցիր ինձ,— հանդիմանեց ռոբոտը:— Քեզ համոզում էի, որ մնանք Սիգմա—55 մոլորակի վրա: Դու չլսեցիր ինձ: Ինչո՞ւ չես խոսում:

— Լսու՛մ եմ:

— Այնտեղ դու արդեն լավ բարեկամներ ունեիր: Ինքդ ես պատմել: Ասում էիր, թե նրանք կարծես

ճիշտ այնպիսի մարդիկ լինեն, ինչպիսիք կային երկրի վրա։ Նրանք սիրում էին ինձ։ Այնտեղ ինձ լավ էիր զգում։ Ամեն բան արդեն սովորական էր դարձել։ Ինքդ ես ասել։ Իսկ հիմա դու շտապում ես երկիր, որտեղ վաղուց չկան այն մարդիկ, որոնք պետք է սպասեին ինձ։ Նորերը չգիտեն ինձ, նրանք ինձ չեն սպասում։ Նրանց համար դու օտար ես, բոլորովին օտար։

— Լռի՛ր,— խնդրեց մարդը։

— Դու երկրի վրա անելիք չունես։ Քեզ այնտեղ չեն սպասում։

— Լռի՛ր,— պահանջեց մարդը։

— Վերադառնանք,— խորհուրդ տվեց ռոբոտը։— Վերադառնանք դեպի Սիգմա—55 մոլորակը։ Կամ, ավելի լավ է, մեկ ուրիշ, ավելի մոտիկ մոլորակ որոնենք։

— Լռի՛ր,— մարդը բռունցքներով հարվածեց աթոռի բազկակալին։

Մեքենան նորից բրբջաց։

— Ի՞նչ ես ուզում,— վախեցած հարցրեց մեքենան։

Մարդը բացեց տուփը։ Այնտեղ գտնվում էր պղնձյա անջատիչը, որի սև բռնակը շողում էր սրահի կապտաճերմակ լույսի տակ։

— Մի՛ անջատիր,— բղավեց մեքենան։— Դու կսպանես ինձ։ Մի՛ անջատիր։

Աչքը թարթում էր շատ արագ, անհանգիստ, ու մարդը այնտեղ սարսափ նկատեց։

— Կսպանես ինձ,— շարունակում էր բղավել մեքենան։— Հինգ տարի ես քեզ հետ եմ եղել։ Խնդրում եմ...

Մարդը դանդաղ փակեց կափարիչը։ Չկարողացավ նայել ընկերոջ միակ աչքին և դուրս եկավ աշխատասենյակից։

* * *

Աստղանավը դանդաղ լողում էր դեպի երկրագունդը։ Հարևան սրահում գտնվող մեքենան կատարում էր իր վերջին հաշվարկները բարեհաջող վայրէջք ապահովելու համար։



— Դու շտապում ես,— ծիծաղի միջից ասաց նա։

Մարդը ոտքի ելավ, քայլեց դեպի դուռը, ապա՝ ետ։ Մոտեցավ նիկելապատ ընկերոջ ձախ կողմում գտնվող տուփին։

Մարդը քսանութ օր շարունակ չէր խոսել նրա հետ։ Մեքենան հաճախ էր կանչում նրան։ Բայց մարդը համառում էր։

Նստում էր միայնակ իր սենյակում և ուսում-

նայիրում այն ժապավենները, որոնք վերցրել էր հինգ տարի առաջ և որոնք այսօր փաստորեն երկու հարյուրամյակի վաղեմություն ունեին։ Կարդում էր մի քանի անգամ կարդացածը, դիտում էր տասնյակ անգամներ դիտածները և լսում էր հինավուրց երգեր, որոնք երբեք չէին ձանձրացնում նրան։

Եվ միայն ճանապարհորդության վերջին օրը երբ իմացավ, որ աստղանավը պատրաստվում էր վայրէջքի, նա փոխեց տիեզերագնացի իր հագուստները, հարդարեց իրեն, մտածեց, որ սրանից հինգ տարի առաջ գլուխը չէր ճաղատացել ու, հուզմունքից հևալով, կանգնեց ելքի սրահում։

Ռոբոտը ձայն էր տալիս նրան։ Մեքենան գիտեր, որ նրա հետ ինքն այլևս գուցե չհանդիպի։ Եվ չէր ուզում, որ իրենք նեղացած բաժանվեին։ Բայց մարդը ուշադրություն չէր դարձնում։

Հետո ինքնաշարժ ապարատները հաղորդեցին, որ աստղանավն արդեն վայրէջք է կատարել։ Թարթեցին ազդանշանային լամպերը, և դանդաղ, անասելի դանդաղ բացվեց ելքի դուռը։ Ու բդր մի քայլ առաջ գնաց, դուրս նայեց ու, հանկարծ շրջվելով, վազեց ռոբոտի մոտ։

— Մենք արդեն Երկրի վրա ենք,— տխուր ասաց մեքենան։

— Ես տեսա կապույտ երկինքը, ես ամպերը տեսա,— բացականչեց մարդը։— Եվ տեսա, թե այնտեղ, հարթակում որքա՞ն մարդիկ են հավաքվել։ Եկել են ինձ դիմավորելու։ Հասկանու՞մ ես։ Դու այդ երբեք չես կարող տեսնել։ Երբեք։ Մարդիկ ինձ չեն մոռացել։ Նրանք չէին կարող ինձ մոռանալ։

— Չեն մոռացել,— դժվարությամբ կրկնեց մեքենան։ Ապա նրա նիկելափայլ պատյանի վրա գտնվող աչքը դողդողաց ու մարեց։

«Ապահովիչներն այրվեցին» —մտածեց մարդն ու շրջվեց։

Նա շտապեց դուրս, որտեղ կապույտ երկինքն էր ճերմակ-ճերմակ ամպերով և մարդիկ, որոնք միշտ հիշել էին նրան։





# Բասովի տնակը

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Տայգան լուսավորված էր հանգիստ, կաթնագույն լույսով։ Ձյուն էր գալիս։ Խավարը բարձրացել, սև ջահի նման կախվել էր տայգայի գմբեթից։ Կեչիները ննջում էին կախարդական հանգստությամբ։ Լուռ էր տայգան, շշուկ չէր լսվում. Բայց կեսօրին մի սահնակ անցավ գետի սառած հունով, խզեց լռությունը։ Սահնակի վրա, մուշտակներում փաթաթված, երեք մարդ կար։ Նրանցից երկուսը երբեմն իջնում, վազում էին սահնակի հետևից։ Եղջերուները դժվարությամբ էին քաշում իրենց բեռը փափուկ ձյան վրայով։ Սառած գետը պտույտներ էր անում սահնակի տակ, մերթ կորչում, կծկվում՝ կիրճերը մտնելիս, մերթ դուրս գալիս հարթավայր, փռվում, տարածվում չոր ավազների վրա։

— Գիշերը ձյունը կդադարի,— ասաց կայուրը*։ Նրա հաստ, մոտ կոպերն իջան սև աչքերին։ Կգիշերենք Բասովի տնակում։ Մոտ է, լուսով կհասնենք։

Նրանք երեքն էլ ճանաչում էին Իվան Բասովին, գիտեին նրա կյանքի տխուր պատմությունը։ Առողջ, դիմացկուն տղամարդ էր նա։ Կյանքի ճիշտ կեսն անց էր կացրել տայգայում։ Քսան տարի, հեշտ է ասել... Նա տնակ էր կառուցել Բույունդա գետի ափին և վերջին հինգ տարին մենակ ապրեց այդ տնակում։ Շուրջը, հարյուրավոր կիլոմետրեր անմարդաբնակ էր։ Նա մենակ էր դարավոր տայգայի խորքում։ Տնակը կանգնած էր գետից քիչ հեռու, մի փոքրիկ մամռաթմբի վրա, առագին ժայռաբեկորի ստվերում։ Այդ տեղը գետի ամենախոր տեղերից մեկն էր, որտեղ նա միանգամից թեքվում էր դեպի աջ, պտտվում ժայռի տակով և նույնքան անսպասելի արագությամբ ետ դառնում, մտնում կիրճը։ Ամռանը, երբ գետը խաղաղում, ջուրը լճանում էր, տնակն իր միակ պատուհանով անդրադառնում էր ջրում։

Հիմա տնակը դատարկ էր, ոչ ոք չէր ապրում այնտեղ։ Ձյունը թմբեր էր կուտակել դռան, պատերի տակ, քամիները ծածկել էին պատուհանը ձյան շերտերով։

— Իվան Բասով,— շշնջաց Օլչանը, երբ Բասովի

* Սահնակավար



տնակը երևաց բլրակի վրա: Անսովոր մարդ էր Բասովը, այդպիսի մարդիկ քիչ են լինում, դրա համար էլ նրանց կորուստը զգացվում է դեռ երկար ժամանակ և ցավ է պատճառում ճանաչողներին: Օլչանը կանգնեցրեց սահնակը տնակի մոտ: Նրանք երեքն էլ լուռ էին, մտազբաղ: Օլչանը փայտով ինչ-որ գծեր էր քաշում ձյան վրա, կարծես ձև էր տալիս պղտոր հեղեղի նման ուղեղը լցված մտքերին, երկրաչափական ուղիղ գծերի մեջ տեղավորելու համար: Դեռ անցած տարի այս տնակումն էր ապրում խարտյաշ, բարձրահասակ, կապույտ աչքերով այդ բարի մարդը: Նա սիբիրցի էր, Աչինսկ քաղաքից: Մի գիշեր տնից դուրս էին կանչել, ու այլևս տուն չէր վերադարձել: Չվերադարձավ նաև հայրը:

— Գիշերում ենք Բասովի տանը,— ասաց Օլչանը:

Չնայած նա ուղեկորներից ամենափոքրն էր, բայց ամենից փորձվածն էր և հմուտը: Օլչանը ծնվել էր տայգայում և լավ գիտեր նրա լեզուն ու կամակորությունները:

Դուռը բացեցին: Քիչ հետո լուսավորվեց տնակի միակ պատուհանը: Եվ երբ տնակը տաքացավ վառվող սփռաբույսերի կրակից, Պրոկուշչենկոն ասաց.

— Այդպես էլ ես մինչև հիմա չեմ հասկացել, ինչու՞ Բասովը չի լսել յակուտ որսորդին: Ի՞նչ էր այդ, մարտահրավե՞ր, թե՞ պարզապես կամակորություն:

— Չեմ կարծում, նա նոր մարդ չէր տայգայում,— ասաց Օլչանը,— նա կամակոր մարդ էլ չէր:

— Ի՞նչ եք կարծում, Ալեքսանդր Պետրովիչ,— Ալեքսանդր Պետրովիչ Տուրկինն արդեն պառկել էր տախտակամածին՝ ձեռքերը դրել գլխի տակ, ննջում էր.— դուք ավելի լավ գիտեք այդ բոլորը:

— Այո՛, գիտեմ, բայց ես էլ չեմ հասկացել: Նա գիտեր, անշուշտ, որ այդպիսի սառնամանիքին դուրս գալ չի կարելի, գիտեր և արեց: Ինչու՞:

— Ինչու՞: Այդ «ինչու»-ն է, որ միշտ ուղեկցում է մեզ,— ասաց Պրոկուշչենկոն,— ինչու՞ այդպես արեց Բասովը: Երևի այլ կերպ չէր կարող: Ամեն մարդ իր բնավորությունն ունի, իր վերաբերմունքը:

Իսկ ի՞նչ էր տեղի ունեցել տայգայում: Ճիշտ երկու տարի առաջ, դեկտեմբերյան սառնամանիքներին, երբ օդի ջերմաստիճանն անընդհատ ընկնում էր, իսկ ամսվա վերջերին ընկավ մինչև մինուս վաթսունյոթի, տայգան արձանագրել էր սառը լռության մեջ տեղի ունեցած այդ դեպքը: Այդ օրը առավոտյան օդը կարծրացել, կապտին էր տալիս: Երկրի վրա ասես թթվածին չկար:

— Օդ չկա,— շշնջաց Բասովը:

Եվ իսկապես օդ չկար: Բնությունը շնչահեղձի պես կապտել էր: Բասովը գիտեր, թե ինչ է նշանակում այդ: Եվ հանկարծ նրան թվաց, որ ձայներ է լսում: Նա լարեց ուշադրությունը: Ձայները կրկնվեցին: «Մարդ կա դրսում»— մտածեց, կապեց դեմքին բրդյա երեսկալը, հագնվեց, դուրս եկավ տնակից:

— Չու՛, չու՛: Ի՛յ, է՛յ...

Սահնակ էր գալիս: Բասովը շտապ տուն մտավ, սփռաբույսերի արմատներ գցեց կրակին, որպեսզի ծուխը բարձրանա, մարդիկ տեսնեն ծուխը: Այդպիսի պահերին դրսում խարույկ չես անի, փայտը չի վառվում, կրակը հանգչում է, թթվածինը չափազանց քիչ է: Նա թեյի ամանը կախեց եռոտանուց՝ կրակի վրա, խոտ բերեց, գցեց հատակին: Երկար ժամանակ լսվում էր կայուրի ձայնը, լսվում էր շատ մոտիկ, բայց Բասովը գիտեր, որ սահնակը դեռ հեռու է: Այդպիսի սառնամանիքներին ձայները պարզ և մոտ են լսվում: Երբ ձայնն ավելի մոտեցավ, Բասովը դուրս եկավ և սկսեց աղաղակել: Նրան պատասխանեցին նույն աղաղակով, որ նշանակում էր՝ լսեցինք, գալիս ենք:

Բասովը տուն բերեց սառեցրած ձկներ, սպիտակ կաքավներ, երկու խլահավ՝ այն ամենը, ինչ հարկավոր էր մարդկանց ընդունելու համար: Տնակում տաք էր, թեյը եռում էր արդեն, երբ սահնակը կանգ առավ պատուհանի տակ: Բասովը դուրս եկավ: Սահնակի վրա, քնապարկում պառկած էր յակուտ որսորդի տասնհինգ տարեկան աղջիկը: Նրա ոտքերի մոտ նստած էր տղան:

— Բարև, Իվա՛ն,— բացականչեց որսորդը:

— Ա՜, այդ դու՞ ես, Թիլլա՛ր, բարև՛, բարեկամս:

— Զոյան հիվանդ է, ծանր հիվանդ է, Իվա՛ն:

Բասովն ու որսորդի տղան Զոյային տարան տընակը: Թիլլարը զբաղված էր նարտով:

Տաք սենյակում հիվանդը աչքերը բացեց:

— Մի քանի օր է,— ասաց որսորդը,— տաքությունը չի իջնում, շատ բարձր է: Ուզում եմ Մյակիտ հասցընեմ: Մնացել է մեկ օրվա ճանապարհ, Իվա՛ն, բայց վախենում եմ, օդի ջերմաստիճանը շատ է ընկած, երեխան կարող է մրսեցնել թոքերը: Դու գիտե՞ս այդ ինչ է նշանակում:

— Հասկանալի է, Թիլլա՛ր, պետք է բժշկին բերել Մյակիտից:

Տաք չիֆիրից*, լավ հանգստանալուց հետո Թիլլարի նարտը իջավ Հերբա գետի հունը և սառույցի վրայով սլացավ դեպի Մյակիտ: Նրա հետ էր տղան:

Նստած հիվանդի մոտ, ամբողջ գիշեր Բասովը աչք չփակեց: «Ես լավ կնայեմ,— ասել էր նա որսորդին,— դուք գնացեք բժշկի հետևից: Զոյան թող մնա այստեղ»:

Լուսաբացին օդի ջերմաստիճանն ընկավ. խարույկը չէր վառվում, ծուխը չէր բարձրանում, կրակը մարում, տնակը ցրտում էր: Բասովի գլուխը պտույտ էր գալիս, թվում էր, թե մեկը երկաթե օղ է հագցընում իր գլխին, կափարիչ դնում դեմքին:

— Օդ չկա,— շշնջաց նա, սրբեց ճակատի քրտինքը:

Հագուստը վրան ծանրացավ, բացեց կոճակները, մի կողմ նետեց գոտին, շոգ էր, շնչահեղձ էր լինում և դրա հետ միասին քունը տանում էր: Քունը փակում էր աչքերը, բթացնում միտքը:

— Ջու՜ր, ջու՜ր,— նա լսեց հիվանդ աղջկա ձայնը:

Նա հազիվ հաղթահարեց քունը, վերցրեց կացինը և դուրս եկավ տնակից սառույց կոտրելու: Կապույտ, թանձր օդը խցանեց նրա կոկորդը: Նա զգաց, միայն զգաց, որ ոտքերը ծալվեցին, տայգան պտտվեց, վեր խոյացավ, և ինչ-որ բան ընկավ: Ե՞րբ էին նրան վերցրել սառույցի վրայից, ե՞րբ էին տուն բերել՝ նա չգիտեր: Երբ ուշքի էր եկել, տեսել էր Մյակիտից եկած բժշկին, որսորդին, նրա երեխաներին և վառվող կրակը:

Ամբողջ ձմեռը նա հազաց չարագուշակ, չոր հազով, իսկ գարնանը, երբ օրերը տաքացան, սկսվեցին սպիտակ գիշերները, Բասովը հիվանդացավ թոքերի բորբոքումով: Նա հիվանդացավ, որովհետև ձմեռը սառեցրել էր թոքերը: Այդպիսին է դաժան սառնամանիքի օրենքը. ձմեռը սառչում են թոքերը, իսկ գարնանը մեռնում են թոքերի բորբոքումից: Գարունը եկավ, Բասովը տեսավ միայն նրա սկիզբը և մեռավ: Նրան թաղեցին մի հաստաբուն ծառի տակ, իր տնակի մոտ: Ամեն տարի յակուտ որսորդը իր երեխաների հետ այցելում է Բասովի գերեզմանին և Զոյան ծաղիկներ է դնում նրա սառն շեմքին:

* Թանձր թեյ:



— Նա կարող էր, իհարկե, սառույցի չգնալ,— ասաց Տուրկինը,— եթե ուրիշ մարդ լիներ, չէր գնա, բայց Բասովը այլ մարդ էր, նա միշտ ուշադիր և հոգատար էր բոլորի, նույնիսկ օտարների նկատմամբ:

— Հոգատարությու՜ն: Հոգատարությունը հասկանալի է և գովելի, բայց ո՛չ կյանքի գնով: Նա գիտեր, որ կսառչի, գիտեր, որ այդ պահերին դուրս գալ չի կարելի, գիտեր և վտանգի ենթարկեց իր կյանքը, համարձակվեց դուրս գալ,— ասաց Օլչանը:

—Նա այդպիսի մարդ էր,— ասաց Պրոկուշչենկոն:— Ամեն մարդ իր բնավորությունն ունի, իր վերաբերմունքը: Նա այդպիսի մարդ էր, ուրիշ կերպ չէր կարող, անհնարին էր:

Ուղևորները երկար խոսեցին, հոգնեցին և մեկմեկ քնեցին: Կես գիշերին ձյունը դադարեց, լուսինը դուրս եկավ և իր անկենդան լույսով լուսավորեց Բասովի տնակը:



Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ




## ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԳԱՆՁԵՐ

Կարո՞ղ եք ասել, այն ի՞նչ նյութ է, որ թեթև է, ինչպես ծուխը, կարծր՝ ինչպես պողպատը, թափանցիկ՝ ինչպես ապակին, փափուկ՝ ինչպես մորթին, ճկուն՝ ինչպես ռետինը, դիմացկուն՝ ինչպես պլատինը, դյուրավառ՝ ինչպես բենզինը:

— Ահա՛ թե ինչ... Մենք այդպիսի նյութ չենք տեսել,— երևի կասեն ձեզանից շատերը:

Դա, երեխաներ, այսպես կոչված «անտեսանելի ոսկին» է:

— Իսկ որտե՞ղ է գտնվում այդ «անտեսանելի ոսկին»— կհարցնեք դուք:

Դա գտնվում է «անտեսանելի գանձերի» երկրում: Բայց չկարծեք, թե կա այդպիսի ինչ-որ կախարդական երկիր: Դուք այդ նյութը իսկույն կգտնեք, եթե ուշադրությամբ դիտեք ձեր շուրջը: Եվ շատ կզարմանաք, եթե ձեզ ասեն, որ ահա ատամի այս փայլուն խոզանակը, այս նուրբ ու դիմացկուն գուլպաները, այս թեթև ու հաճելի վերնաշապիկը,




վերարկուի այս մորթե օձիքը պատրաստված են «ոչնչից»:

Իսկ «ոչինչը» հենց այն սովորական գազն է, որ անսպառ կերպով վառվում է ձեր խոհանոցներում՝ արձակելով հաճելի ջերմություն: Իսկ ինչո՞ւ այդ ամենաէժանագին վառելիքը չկոչել «անտեսանելի ոսկի», երբ այն ոսկուց ավելի կարևոր է մեզ համար և ինչպե՞ս այդ գազի զանազան տեսակները չկոչել «անտեսանելի գանձեր», երբ դրանցից այժմ սովետական արդյունաբերությունը՝ թողարկում է 2100 տեսակի պլաստմասսային նյութեր:

Բայց միայն դրանով չի սպառվում «անտեսանելի ոսկու» բերած օգուտը: Մեր երկրում այժմ կառուցվում են քիմիական խոշոր գործարաններ, 17 ջերմաէլեկտրակայան, որոնք աշխատելու են բնական գազով: Դրա շնորհիվ կտնտեսվեն միլիարդավոր ռուբլիներ:

Այժմ գազից բժշկությունն ստանում է շատ կարևոր դեղորայք. գտնված է նույնիսկ մի դեղ, որը ներարկում են հիվանդին այն ժամանակ, երբ նա շատ արյուն է կորցրել: Եվ այդ դեղը հիանալի կերպով փոխարինում է արյանը: Գիտնականներն ստեղծել են նաև մի հրաշագործ փոշի՝ հերբիցիդ, որը ոչնչացնում է մոլախոտերը՝ առանց վնաս հասցնելու հացաբույսերին: Իսկ նավթային գազից ստացված ֆրեոնով ռումբեր են պատրաստում, որոնք նետելով ճահիճներն ու անտառները՝ ոչնչացնում են մոծակներին ու մժեղներին:

Պոլիէթիլենը, որ ստացվում է նույնպես գազից, չափազանց կարևոր նյութ է բժշկության մեջ. դրանով պատրաստում են արհեստական ծնոտ, կերակրափող և նույնիսկ սրտի մասեր: Գուցե անհավատալի թվա ձեզ, եթե ասենք, որ գազի շնորհիվ հարյուրավոր հեկտար բաց տարածության վրա ձմեռային սառնամանիքը փոխվում է գարնանային տաք եղանակի և ցրտից պաշտպանվում են ցիտրուսային բույսերը:

Բայց հնարավոր չէ պատմել այն բոլոր բարիքների մասին, որ բերում է գազը: Դրա համար, երեխաներ, խորհուրդ կտայինք կարդալ Վ. Կրուպինի «Անտեսանելի գանձեր» գիրքը:

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԵՂՆԻԿԻ ՈՐԴԻՆ

Սքանչելի երկիր է Աբխազիան: Այն ընկած է Սև ծովի արևելյան




ափի և Կովկասյան լեռնաշղթայի արանքում: Գեղեցիկ են նրա անդնդախոր ձորերն ու երկինք հասնող լեռները, ավելի քան գեղեցիկ՝ այդ լեռների մեջ ընկած կապուտաչյա լճերն ու լճակները, փրփրաբաշ գետերն ու գետակները:

Ձեզանից գուցե շատ քչերն են եղել այդ հրաշալի վայրերում, չգիտեն ինչպիսի մարդիկ են ապրում այնտեղ, ինչ երազներ ու ձգտումներ են ունեցել: Եթե դուք կարդաք աբխազական հեքիաթները, ապա կիմանաք, թե ինչքան ազատասեր ու արի է աբխազ ժողովուրդը: Այդ հեքիաթների հերոսների հետ կշրջեք Աբխազիայի գեղատեսիլ վայրերում, որոնց մասին այնքա՜ն լավ է գրել ռուս նշանավոր գրող Անտոն Պավլովիչ Չեխովը. «Ամեն ինչ նոր է, հեքիաթային... ու բանաստեղծական, եթե ես թեկուզ մեկ

ամիս ապրեի Աբխազիայում, կարծում եմ, հիսունից ավելի հրապուրիչ հեքիաթներ կգրեի: Ամեն թփից, լեռների բոլոր ստվերներից և կիսաստվերներից, ծովից ու երկնքից նայում են հազարավոր թեմաներ»:

Աբխազական հեքիաթներում դուք կգտնեք շատ ուսանելի բաներ, որոնք միշտ էլ պետք կգան կյանքում:

Ահա «Երկու մկներ» հեքիաթը: Քաղաքի մուկը շատ վերից է նայում անտառի մկանը և հպարտորեն ասում.

— Ինչքան աղքատ ես ապրում, և ինչքան վատն է քո բնակարանը: Գնանք քեզ ցույց տամ, թե ես ինչպիսի հարստության մեջ եմ ապրում:

Բերում է նրան քաղաք և տանում այն տունը, որտեղ ինքն է ապրում: Պատվելուց հետո քաղաքի մուկն ուզում է հյուրին ծուղակը գցել, բայց ինքն է ընկնում: Անտառի մուկը ազատվելով ծուղակից, երդվում է երբեք չընկերանալ պարծենկոտի, նենգի ու նախանձի հետ:

Իսկ «Իշխանն ու երեք եղբայրները» հեքիաթում պատմվում է, թե ինչպես է պատժվում ագահ իշխանը, որը խորամանկությամբ ուզում էր տիրանալ երեք եղբայրների էշերին:

Հետաքրքիր է նաև «Մոլլայի ագահությունը» հեքիաթը: Այստեղ ցույց է տրված, թե ինչպես ազնիվ մարդու անուն հանած մոլլան իրականում ամենամեծ խարդախն է:

Այսպիսի գեղեցիկ և ուսանելի հեքիաթներ շատ կան «Եղնիկի որդին» աբխազական հեքիաթների գրքում:

ԵՐՋ. ԱՌԱՔԵԼՅԱՆ



# ԱՄՌԱՆ ԵՐԵԿՈ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Զեփյուռիկն այս ե՞րբ բերեց,
Լցրեց դաշտը կապույտով,
Ամեն սյունին լամպ վառեց,
Վազեց մեզ մոտ կամուրջով:

Ասուպն իջավ ու վառեց
Մեծ խարույկը ճամբարի,
Հետո սարին նա թառեց
Ու վար կանչեց աստղերին:

Բոցերն ելան վեր ու վեր,
Նրանց համբույր տվին տաք.

Շատրվանեց երգը մեր,
Ողողեց ձորն անհատակ:

Մութը սևուկ կատվի պես
Քաշվեց քարայր ու անտառ,
Մարաղ մտած նայեց մեզ,
Մեր պարերին խենթ-խելառ:

Գիշերն ապա ձորակից
Փռեց թևերն իր թավիշ.
Ծղրիդներին ձայնակից
Գետակն արեց վաշ ու վիշ...

# ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂՈՒՄ

ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ

Մանուկների հնչուն ծիծաղ,
Մանուկների զվարթ երգեր,
Վագոններից թափահարող
«Հրաժեշտի» անթիվ ձեռքեր:

Չորս դին բուրմունք, ծաղկած ծառեր,
Ու շեփորներ մանկանց ձեռքում.
Աղբյուրները լեզու առել,
Հերոսների գովքն են երգում:

Խնդությունից ծիծաղներն են
Ուզում ճախրել, անվերջ երգել.
Ծաղկու՞նքը, թե՞ մանուկներն են
Հազար գույնով ձորը ներկել:



ՍԱՐՄԵՆ

# ԻՄ ԹՈՌՆԻԿԸ

Դեռ չգիտե ինչ է դպրոց,
Ինչ է գրիչ, ինչ է գիրք,
Ունի փոքրիկ սայլ-օրորոց
Ու մայրական տաքուկ գիրկ:

Աչիկներով սև ու սիրուն
Նա գերում է ամենին.
Ով նայում է, ջերմ գուրգուրում,
Փայփայում է թոռնիկին:

Այնպես վազում է չորեքթաթ,
Որ չես հասնի դու նրան,
Մեկ էլ տեսար, նա անկյան
Բացել է մի պահարան,

Ինչ կա-չկա խառնել իրար,
Որոնում է, որոնում,
Կարծես գտել է մի աշխարհ
Անծանոթ ու անանուն:

Դեռ առաջին քայլն է անում
Բազկաթոռից՝ թիկնաթոռ.
Մեկ լալիս է, մեկ ծիծաղում՝
Խինդով լցնում տունն անգորր:

«Տատա՛, տատա՛» է ասում նա.
Շուտով «մայրիկ» էլ կասի,
Հասակով էլ կբարձրանա,
Դյուտեր կանի, կերազի:

Կտեսնի մեր գալիքը վառ,
Սահմանները վերացած,
Եղբայրությամբ աշխարհ-արար
Համերժորեն միացած:

Ինչ որ երազ էր մեր կյանքում,
Նա կտեսնի այնպես պարզ,
Կնամփորդի տիեզերքում,
Կերթա Լուսին, կերթա Մարս:

Իր «Վոլգայով» կշրջի նա
Կախարդական Վեներան.
Ու պապիկի սրտով հիմա
Թող ես երնեկ տամ նրան:



# ԱՐԱՆ

Խնձորի այգում
Խաղում է Արան,
Վարդերը ծաղկուն
Ժպտում են նրան:

Շուրջը՝ կանաչ ծով,
Ծառեր դալարուն,
Շիթեր շաղ տալով
Երգում է առուն:

Միան է ծլվլում
Ծառի վրայից,
Ձայներ են լսվում
Բոլոր կողմերից:

Ամենքը միայն
Մի բան են ասում.
— Շատ ապրի Արան,
Սիրում է ուսում,

Միշտ տուն է բերում
«Հինգ»-եր գեղեցիկ.
Ինքն էլ վառվռուն
Ու «գերազանցիկ»:

Դեռ ինչե՞ր կանի
Արան դպրոցում...
Թող խաղա հիմա
Բնության ծոցում:





# ՀԱՍՈՒՆ ՀԱՍԿԵՐԸ

ՄԻՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ

Հուր են արձակում հասուն հասկերը,
Կարծես արևի ճաճանչներ լինեն,
Նրանց շնչով է շնչում աշխարհը,
Ու բոցկլտում է ամառն հրեղեն:

Երբ արեգակն է հանգչում գիշերը,
Հասկերի գիրկն են ամպերը իջնում,
Հրով ջերմացնում իրենց սրտերը
Ու թեթևացած նորից բարձրանում:

# ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ՊԱՏԱՆԻ ՏՈՒՐԻՍՏՆԵՐԻՆ



Եկեք խմբովին կամ ամբողջ ջոկատով դուրս գանք արշավի: Բայց ու՞ր գնալ: Իհարկե, դժվար է միանգամից պատասխանել այս հարցին: Մեր առաջ, սեղանի վրա փռված է Հայաստանի քարտեզը: Հրապուրիչ ուղղություններ շատ կան. Գառնի—Գեղարդ, Արտաշատ—Դվին, Դիլիջան—Ջերմուկ, Սևան...

Գուցե ձեր առաջին արշավը ցանկանում եք կազմակերպել դեպի Ծաղկաձոր: Կարելի է, բայց նախքան մեկնելը պետք է պարզել, թե որ ճանապարհով ավելի հետաքրքիր կլինի: Գուցե նստել Երևան—Ծաղկաձոր ավտոբուս... Ավտոտուրիզմը վատ չէ, բայց հետիոտն արշավը շատ ավելի հետաքրքիր է: Եկեք գնանք ոտքով: Երթուղին մշակելիս ձեզ մեծ չափով կարող է օգնել «Հայկական ՍՍՌ ատլասը»: Բաց արեք ատլասի 109-րդ էջը, որտեղ նյութական կուլտուրայի հուշարձանների քարտեզն է: Նայեցեք, թե ձեր երթուղու շրջակայքում ինչպիսի հուշարձաններ և այլ տեսարժան վայրեր կան: Այդ բոլորը նշեք թղթի վրա: Այժմ բաց արեք ատլասի 13-րդ էջը և նույն եղանակով ձեզ մոտ նշումներ արեք երթուղու մերձակայքում եղած օգտակար հանածոների, լեռնատեսակների մասին: Այնուհետև նայեցեք 52, 53, 54-րդ էջերը, ծանոթացեք բուսականության, կենդանական աշխարհի, վնասատուների և ձեզ հետաքրքրող այլ հարցերի հետ:

Մեկ օրում հնարավոր չէ ոտքով Երևանից հասնել Հրազդան: Ուրեմն պետք է որոշել կանգառները և գիշերելու վայրերը: Նպատակահարմար կլինի գիշերել բնակավայրերից ոչ շատ հեռու, անտառների եզրերին կամ ծաղկավետ հովիտներում:

Երևանից դուրս ենք գալիս Հրազդանի մեծ կամուրջի մոտով, իջնում ձորը և շարժվում դեպի Արզնի: Ճանապարհին նայում ենք Պտղնիի ճարտարապետական հուշարձանների կոմպլեքսը, հավաքում հերբարիումային նմուշներ: Ինչ խոսք, ձեզ կհետաքրքրեն նաև միջատները, սողունները ու մանր կենդանիները:

Հասնում ենք Արզնի: Ուսումնասիրում ենք պալեոլիթի ժամանակաշրջանի պեղումները: Լինում ենք առողջարանում, խմում ենք հանքային ջրից և առողջարանի մոտակայքում խփում ենք վրանները:

Երկրորդ օրը շարունակում ենք ճանապարհը: Մտնում ենք Արզել, ուր նույնպես բավական հուշարձաններ կան: Մոտենում ենք Արզականին: Քարերն ավելի ու ավելի հետաքրքիր են դառնում: Հավաքում ենք Արզականի հռչակավոր մարմարների նմուշներ: Ծաղկունյաց լեռնաշղթան, դա Հայկական Ալպերն է. ի՞նչ գանձեր ասես որ չկան նրա ընդերքում: Կեսօրից հետո հասնում ենք Լուսավան: Մի փոքր հանգստանալուց հետո ծանոթանում ենք այս նորաստեղծ քաղաքի հետ:

Հաջորդ առավոտյան քայլում ենք դեպի Բջնի: Դիտում ենք Բջնիի միջնադարյան ամրոցը, աշխարհիկ կառույցները, խաչքարերը և շարժվում դեպի Հրազդան:

Ահա և Հրազդանը, լիճը, Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը: Այստեղ սկսվել է յոթնամյակի խոշորագույն կառույցներից մեկի՝ Լեռնաքիմիական կոմբինատի կառուցումը: Վերջապես չորրորդ օրը մտնում ենք Ծաղկաձոր և մեր վրանները խփում ճամբարներից ոչ հեռու:

*Արշավի դուրս գալուց առաջ պետք է ծանոթանալ ճանապարհների և անհրաժեշտ իրերի մասին. արշավային փոքր վրաններ, կողմնացույց, կաթսաներ, ճանապարհորդական ձեռնափայտեր, դանակ, փոքր կացին, պարան, հարմարանքներ հավաքածուների համար: Հանդերձանքը պետք է լինի տաք, թեթև և դիմացկուն:*

*Ճանապարհին պետք է հանդիպումներ ունենալ պիոներջոկատականների, կոլտնտեսականների և բանվորների հետ, համերգներ տալ: Նախօրոք պետք է ընտրել ղեկավար և արշավային խորհուրդ: Չէ՞ որ ճանապարհին կարող են պատահել դժվարություններ, անակնկալներ, և խորհուրդը պետք է որոշի, թե ինչպես վարվել: Արշավախումբը պետք է ունենա նաև իր բուժակը, որը կարողանա ցույց տալ առաջին բուժօգնություն: Լավ կլինի ընտրել նաև խմբակի կազմ, որը օրագրում մանրամասն գրանցումներ կկատարի:*

*Իսկ այժմ ինքներդ գծեցեք քարտեզով ու ատլասով, թերթով ու մատիտով և մշակեցեք արշավային երթուղիներ: Կարող ենք հանձնարարել մի քանի երթուղիներ. Երևան—Օշական—Աշտարակ—Բյուրական, Արագածոտն—Մաստարա—Սառնաղբյուր—Մարալիկ—Գեմզաշեն—Արթիկ—Հառիճ—Մարալիկ, Երևան—Ալան—Ջրրվեժ—Ողջաբերդ—Գառնի—Գեղարդ—Զորագյուղ—Մարտունի—Սևան, Երևան—Դվին—Խորվիրապ:*

*Բոլոր դեպքերում կարելի է արշավից վերադառնալ ավտոբուսով:*

*Բարի ճանապա՛րհ, պատանի՛ տուրիստներ*

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

(Երևանի տուրիստական բազայի հրահանգիչ)

# ՈՐՏԵ՞Ղ ԵՆ ՀԻՄԱ ՁԵՐ ԴԱՀՈՒԿՆԵՐԸ

Ամեն մի նոր բացվող գարուն իր հետ նոր հոգս ու զբաղմունք է բերում ձեզ: Բայց որքան էլ կարևոր լինեն դրանք, դուք, սիրելի պիոներներ, չպետք է մոռանաք ձեր ձմեռային բարեկամներին՝ դահուկները: Դրանցով դուք սահում եք ձմռանը, ուրախ ու հետաքրքիր զբոսանքներ կատարում, մրցում միմյանց հետ. ուրեմն դուք էլ ձեր հերթին դահուկների նկատմամբ պետք է խնամք տանեք վաղ գարնանից:

Ամենից առաջ, դահուկները պահպանելու համար պետք է ընտրել խոնավությունից ու շոգից պաշտպանված մի մառան: Չոր ու զով օդը դահուկների համար կարևոր է, քանի որ շոգ լինելու դեպքում դահուկները կարող են շատ չորանալ և կորցնել հկունությունը: Իսկ այդպիսի դահուկները նեղ փոսերի վրայով սահելու ժամանակ կարող են չդիմանալ, կոտրվել և անգամ ծանր հետևանքների պատճառ դառնալ:

Բայց միայն օդի բարենպաստ պայմանները լիովին չեն կարող ապահովել դահուկների պահպանումը:

Պահեստում դասավորելուց առաջ պետք է դահուկները մի լավ ծծեցնեք խայծղանով, իսկ եթե չունեք խայծղան, կարող եք ինքներդ այն պատրաստել: Դրա համար պետք է վերցնել 100 գրամ կուպր և հալեցնել, որից հետո կուպրին խառնելով ավելացնել մինչև 1 կգ. աֆտոլ: Ստացված խառնուրդը թողնել այնքան, մինչև որ սառչի. քսուքը պատրաստ է: Այնուհետև ծայրին փալաս փաթաթած փայտիկով քսուքը պետք է քսել դահուկների սահող մակերեսին: Իսկ եթե դահուկները մաշված են, նպատակահարմար է քսել մի քանի անգամ: Ապա քսուքով ծծված դահուկների արանքում պետք է դնել 4—6 սմ. երկարությամբ տախտակի կտորներ ու դահուկների երկու ծայրերն ամուր ձգելով՝ կապել: Եվ արդեն կարելի է դահուկները տեղավորել ընտրված պահեստում: Իսկ եթե այնտեղ դահուկները դասավորելու համար հատուկ հարմարանք չունեք, ապա պահեստում դահուկները կարող եք դնել ուղղահայաց դիրքով, «քթերը» դեպի ներքև:



Իսկ ինչպե՞ս վարվել դահուկային կոշիկների հետ: Նախ՝ կոշիկների ժապավենիկները պետք է հանել, որից հետո դահուկային № 1 քսուքին խառնելով 50 գրամ պարաֆին՝ քսել կոշիկներին, գլխավորապես կարերի մասերում: Ապա կոշիկները դասավորել բնական դիրքով, ներբանների վրա, որպեսզի չճմրթվեն ու չայլափոխվեն: Հակառակ դեպքում, քսուքով չծծված կոշիկները, նամանավանդ խոնավ տեղում, ծածկվում են անկային բորբոսով և փչանում:

Եթե չխնամեք կոշիկները, տարին քանի՜ հազար զույգ կոշիկ ժամանակից շուտ դուրս կգա գործածությունից:

Գրեցեք խմբագրությանը, թե ուրիշ ինչ եք ուզում իմանալ դահուկային սպորտի վերաբերյալ:

ՏԻԳՐԱՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկարիչ
ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

# Հանելուկներ

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ

Վառարան է,
Վրան՝ հուր,
Ոչ ծուխ ունի,
Ոչ էլ մուր:



Երեք վանկից
Բառ եմ ես,
Ծովում ծնվող
Քար եմ ես:
Վերջին տառս
Թե փոխես,
Ինձ ուտելիք
Կանվանես:



Թուփ է փոքրիկ
Ու միամյա,
Ծաղիկներով
Կապուտաչյա,
Ունի տերև,
Կանաչ ցողուն,
Պտուղներն են
Թաղված հողում:



Այն ո՞վ է, ո՞վ.
Ամռանը ողջ
Մութ գիշերով
Թռչում է,
Իսկ ձմռանը
Լուռ, գլխիվայր
Կախված մի տեղ
Ննջում է:





Կանգնել է, տե՛ս,
Հագած—կապած,
Ոսկե վարսեր
Կրծքին թափած,
Ամեն շորի
Ծալքի տակին
Շարան-շարան
Քարեր անգին:



Ո՞վ է ծնվում՝
Թամքը մեջքին,
Երկու զույգ էլ
Ջստեր հագին:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 02194, Պատվեր 889, Տպաքանակ՝ 8200։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 3/VII 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։
Գինը 20 կ.

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ




ԶԱՔԱՐՅԱՆ ԵՎԱ (Երևան, № 78 դպրոցի առաջին դասարան




ՊՈՂՈՍՅԱՆ ԱՐՄԻՆԵ (Երևան, 5 տարեկան)

ՍԱՐԳՍՅԱՆ ՀԱՅԿ (Թալինի շրջան, գյուղ Վ. Թալին, 4-րդ դաս. աշակերտ, 11 տարեկան) Մեր գյուղը

8

20 կ.



## ԳԱՂՏՆԱԳԻՐ „ՍՊՈՐՏ"

Երբ հարցերի պատասխանները ճիշտ գտնեք և համապատասխանաբար տեղադրեք նշված թվերով ցույց տրված վանդակներում, ապա ուղղահայաց դրությամբ կկարդաք 17-րդ օլիմպիական խաղերի և ՍՍՀՄ չեմպիոնների ազգանունները:

1. Երաժշտական ստեղծագործության տեսակ—33, 22, 42, 12, 47:
2. Սովետահայ նշանավոր բանաստեղծ—10, 2, 23, 13, 28, 46:
3. Քաղաք Ֆրանսիայում.—36, 4, 20, 32:
4. Ն. Զարյանի բանաստեղծություններից—17 24, 38, 6, 15:
5. Կղզի ՍՍՌՄ-ում—26, 9, 29; 11, 1, 31, 7:
6. Ազգության ներկայացուցիչ ՍՍՌՄ-ում—30 18, 3, 45, 27:
7. Ա. Ս. Պուշկինի բանաստեղծություններից—40 35, 16, 44, 8, 19:
8. Վայրի կենդանի—21, 39, 41, 14, 34:
9. Մարմնի վրա թողած վերքի հետք—25, 43, 37
10. Բաղաձայն տառ—5:

Կազմեց՝ Մ. ԲՈՋԱՐՅԱՆ

## ՔՈ ԿԱՐԴԱՑԱԾ ԳՐՔԵՐԻՑ

Ո
Վ
Ք
Ե
Ր
Ե
Ն

Առաջարկ՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ